# ԹՄԲԿԱՀԱՐ

Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ

Ծաղկածորի զով գրկում,
Մեր ջոկատով խանդավառ
Մենք քայլում ենք ու երգում...
Խփիր, խփիր, թմբկահա՛ր:

Քո թմբուկի ձայնի տակ,
Կուռ շարքերն են քայլում մեր,
Դեպի դաշտեր լայնարձակ,
Դեպի կանաչ հովիտներ:

Որքա՜ն լավ է, երբ քեզ հետ,
Պարզած դրոշ բոցավառ,
Արշավից ենք դառնում ետ...
Խփիր, խփիր, թմբկահա՛ր:

Երբ երեկոն է փռում
Կապույտ թևերն իր անձայր,
Ուրախ խարույկ ենք վառում...
Դու խփում ես, թմբկահա՛ր:

Քո թմբուկի ձայնով դու
Մեր ջոկատը հրավառ,
Տանելու ես մի օր տուն,
Խփիր, խփիր, թմբկահա՛ր:



*Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*




№ 7

ՀՈՒԼԻՍ

1954 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 26-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**Տիկնիկային ներկայացում է...**

*Ֆոտոէտյուդ՝ ՆԵՄՐՈՒԹԻ*




Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ

Նկ. Ռ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

Գևորգ Աթարբեկյանը հայ նշանավոր ռեվոլյուցիոներ էր։ Քաղաքացիական կռիվների ժամանակ Լենինը նրան միշտ ուղարկում էր դժվար տեղեր։ Աթարբեկյանը շատ անվախ ու հնարամիտ էր և միշտ հնար էր գտնում պատժելու թշնամիներին։

Մի անգամ նա նստած իր կաբինետում նայում էր սեղանի վրա փռված թղթերը, երբ ներս մտավ իր օգնական Սուրենը և հուզված ասաց.

— Քաղաքի բնակիչների մեջ սոսկալի իրարանցում է տիրում։

— Պատճա՞ռը,— հարցրեց Աթարբեկյանը և ուշադիր նայեց օգնականին։

— Այս գիշեր մի խումբ բանակայիններ մտել են երկու տուն, մորթել կանանց ու ծերունիներին և կողոպտել նրանց ունեցվածքը։

Լսելով օգնականի պատմածը, Աթարբեկյանը մի փոքր մտածեց, ապա ձեռքն ամուր խփեց սեղանին ու գոռաց.

— Ո՛չ, դա սուտ է։ Կարմիր բանակայինն այդպիսի ստոր բան չի անի։ Պետք է գտնել իսկական հանցավորներին։

— Գեորգի Ալեքսանդրովիչ,— շվարած ասաց Սուրենը,— սպանվածների բարեկամները պատմեցին ինձ. չհավատալ չի կարելի։ Ինքս էլ տեսա, թե ինչպես էին փախչում թալանած իրերը ձեռքներին։ Հավանաբար նրանք դասալիք զինվորներ են։

Այդ խոսքերի վրա Աթարբեկյանը սկսեց մտածել։ Նրա դեմքը մռայլվեց։ «Չէ, չեմ հավատում», մտքում ասաց նա ու հարցրեց.

— Ինչո՞ւ չբռնեցիր ու չպարզեցիր։

— Հետապնդեցի, բայց փախան։

Աթարբեկյանը խորամանկ հայացքով նայեց օգնականին ու կտրուկ ասաց.

— Երբեք չեմ հավատա, Սուրե՛ն. այստեղ ինչ-որ խարդախ խաղ կա։

— Ամբողջ քաղաքն է խոսում, Գեորգի Ալեքսանդրովիչ։

— Ես պնդում եմ,— խիստ ասաց Աթարբեկյանը,— կարմիր բանակայինն այդպիսի ստոր բան երբե՛ք չի անի։ Դա թշնամու սարքած պրովոկացիան է մեզ վարկաբեկելու համար։

Սուրենն ուզեց խոսել, բայց Աթարբեկյանը թույլ չտվեց, որ շարունակի։

— Այո, Սուրե՛ն, կռիվ է. թշնամին ընդունակ է ամեն տեսակ միջոցներով իր ստոր գործը կատարել, ժողովրդին վնասել։ Դա ամերիկացիների, թյուրքերի ու դաշնակների սարքած գործն է։ Նրա՛նք կարող են մորթել ու սպանել երեխաներին, մայրերին։ Սուրե՛ն, պետք է բռնենք նրանց...

— Ինչպե՞ս,— հարցրեց Սուրենն ու զարմացած նայեց Աթարբեկյանին։

Աթարբեկյանը ժպտաց ու ասաց.

— Հագնում ենք անգլիական հետախույզ սպաների ու զինվորների շորեր, հետևում «կարմիր բանակայիններին» ու բռնում. էջմիածնի ճեմարանում սովորածս անգլերենը կօգնի մեզ։

— Պարզ է,— հասկանալով նրա միտքը, ասաց Սուրենն ու դուրս եկավ։

Սուրենի գնալուց հետո Աթարբեկյանը պահարանից հանեց անգլիական հետախույզ կապիտանի շորերը, հագուստը փոխեց ու իջավ առաջին հարկը։ Այստեղ արդեն մի խումբ ծպտված զինվորների հետ պատրաստ կանգնել էր Սուրենը։ Աթարբեկյանը մոտեցավ նրանց ու ասաց.

— Գնում ենք բանվորական թաղամաս։

Բոլորը դուրս եկան շենքից ու շտապեցին։ Արևն արդեն հրավառվում էր արևմուտքում։ Գնալով երկարում էին բարձրաևլաց բարդիների ստվերները. տագնապով [illegible] երեկոն իջնում էր քաղաքի վրա։

Աթարբեկյանը խմբի հետ գնում էր կայարան տանող փողոցով։ Այդ պահին նրան մոտեցավ նախօրոք հետախուզության դուրս եկած երիտասարդ մի չեկիստ ու զեկուցեց.

— Ընկեր Աթարբեկյա՛ն, «կարմիր բանակայինների» խումբը մտնում է կայարանի մոտ ապրող մի բազմանդամ ընտանիքի բակը։ Կարող եմ ասել, որ նրանց ղեկավարն ամերիկյան հետախուզության պետի օգնական միստր Ստոունն է։ Աչքի կոպի վրա եղած ուռուցիկ գնդիկից ճանաչեցի։

— Քանի՞ հոգի են,— հարցրեց Աթարբեկյանը։

— Պետին չհաշված՝ յոթ հոգի։

— Այրե՛ս,— չեկիստին գովեց Աթարբեկյանը և հրաման տվեց հետապնդել։— Զենք գործադրում ենք միայն այն ժամանակ, երբ մեզ չհաջողվի թշնամուն բռնել խորամանկությամբ։

Աթարբեկյանն առաջ ընկավ. խումբը հետևեց նրան։ Տեղ հասան այն պահին, երբ կարմիր բանակայինի շորեր հագած մարդիկ ջարդում էին բանվորի տան դուռը։

«Հիմա ներս կմտնեն, կսպանեն բոլորին», մտածեց Աթարբեկյանը, վազեց ցատկեց տան պատշգամբն ու բղավեց.

— Մի՛ստր Ստոուն, սպասեցեք, ի՞նչ եք անում,— ասաց նա անսխալ անգլերենով։

Զինված խումբը դուռը ջարդելը դադարեցրեց։ Հրամանատարը շուռ եկավ ու դիմեց Աթարբեկյանին.

— Պատիվ ունեմ հաղորդելու, պարոն սպա՛, որ դուք սխալվում եք, ես Ստոունը չեմ. ես արտակարգ հանձնաժողովի նախագահ Աթարբեկյանի ներկայացուցիչն եմ։ Նրանից հրաման ունեմ խուզարկել տները և ձերբակալել սովետական իշխանության թշնամիներին,— ասաց նա ռուսերեն։

— Մի՛ստր Ստոուն,— գոռաց Աթարբեկյանը,— եղեք խոհեմ և թողեք այդ խեղկատակությունները։ Մեզ, անգլիական հետախուզությանը, հայտնի է այն գործը, որ կատարում է ամերիկացի մեր դաշնակիցը։ Դա եղել է մեր հավանությամբ։ Բայց այժմ նա կորցրել է իր էֆեկտը։ Քաղաքն արդեն օղակվել է մեր զորքերով։ Նրա գրավումը հեշտացնելու համար, դուք պետք է միանաք մեզ։ Մենք հանկարծակի կհարձակվենք Չեկայի վրա, կգրավենք այն, գերի կվերցնենք Աթարբեկյանին և կտանենք գլխավոր հրամանատարի մոտ։



—... սպասեցեք, ի՞նչ եք անում։

Ու չսպասելով, որ Ստոունը հարցեր տա, հրամայեց.

— Դե՛, շո՛ւտ, հետևեցեք՝ քանի ուշ չէ։

Ստոունը ոչ մի բան չհասկանալով, ենթարկվեց Աթարբեկյանի հրամանին։ Հասան Չեկայի շենքին։ Աթարբեկյանը դիտավորյալ զինաթափեց պահակներին և հրամայեց.

— Մի՛ստր Ստոուն, շուտ ներս մտեք ու բռնեցեք Աթարբեկյանին։ Ձեր ծպտված լինելը կհեշտացնի գործը։

Ստոունը տեղի ունեցածից ոգևորված, գլխով արեց իր խմբին ու ներս մտավ։ Աթարբեկյանը գնաց նրանց հետևից։ Երբ դռները փակվեցին, Աթարբեկյանը բարձրացրեց մաուզերն ու գոչեց.

*— Անձնատո՛ւր եղեք:*

*Ստոունը հանկարծակիի գալով, նայեց Աթարբեկյանին:*

*— Ձեռքը ցած դրեք,— հրամայեց Աթարբեկյանը:*

*Ստոունն ուզեց դիմադրել, բայց կրծքին ուղղված բազմաթիվ զենքերը խելքի բերեցին նրան: Նա բարձրացրեց ձեռքերը:*

*Աթարբեկյանը հանեց, դեն նետեց անգլիական հետախույզի շորերը և ասաց.*

*— Կասկած չկա, մի՛ստր Ստոուն, որ ամերիկյան զինվորները քաջ են, երբ մորթում ու սպանում են երեխաներին...*

*Հետո դառնալով օգնականին ավելացրեց.*

*— Տարեք սրանց:*

*Սուրենը մոտեցավ զինաթափված հանցագործներին:*

*Աթարբեկյանը ասաց նրան.*

*— Ես, որ ասում էի, թե կարմիր բանակայինները այդպիսի բան չեն անի, չէիր հավատում: Հիմա ո՞վ է մեզանից ճիշտը:*

*— Դուք, ընկե՛ր Աթարբեկյան,— ասաց Սուրենը և բռնված մարդասպաններին դուրս տարավ:*

# ՏՈՒՐԻՍՏԸ



*ԳՈՒՐԳԵՆ ԲՈՐՅԱՆ* — *Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ*

Սա՝ պայուսակ, հեռադիտակ,
Նայիր ու կուզես...
Սա՝ գավազան, սա՝ լայն գլխարկ,—
Քաջ տուրիստ եմ ես:

Սա հայրիկի կողմնացույցն է
Կաշվե պատյանով.
Սա պապիկի ժամացույցն է,
Սա՝ քարտեզն է նոր:

Իսկ սա՝ Բողարն է, մեր սրտոտ
Անբաժան ինձնից.
Պոչն է շարժում նա իր բրդոտ
Ու սպասում է ինձ:

Լույսը բացվեց, ճամփա կընկնենք
Մենք Բողարի հետ,
Կանցնենք լեռներ, ձորեր կանցնենք,
Դաշտ, անտառ ու գետ:

Կըգնանք մենք առաջ հյուսիս,
Իսկ հետո՝ հարավ,
Իսկ Բողարը ամեն հարցիս
Ձայն կըտա՝ հա՛ֆ... լա՛վ...



Կքայլեմ ես ուրախ անչափ
Եվ չեմ նայի ետ,
Առուները կըքչքչան,
Կվազեն ինձ հետ:

Կժպտան ինձ ծաղիկները,
Բարև կտան ինձ,
Ու կըսուլեն թռչունները
Ուրախ երգը իմ...

Իսկ մեր կանաչ մեծ անտառը
Ճամփա կտա ինձ,
Դժվար լինի ճանապարհը,
Կքայլեմ, ոչի՜նչ...

Բայց թե երեկ մայրիկն ասաց.
— Թույլ եմ տալիս քեզ,
Ոչ թե հեռու անտառ գընաս,
Այլ... միայն պարտեզ...

Մայրիկն ասաց.

— Դու շատ փոքր ես,
Իմ խելո՛ք տըղաս,
Քիչ սպասիր, ճամփա կընկնես
Երբ որ... մեծանաս...

Ասա, Բողար, քիչը ե՞րբ է,
Որ ես մեծանամ...




ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Եղնիկը փոքր էր, կանգնել չէր կարողանում։ Եթե կարողանար, կենդանի չէր ընկնի որսորդի ձեռքը, որը մի մայիսյան օր անտառապատ լեռներից իջավ շիկավուն մազերով այդ ձագուկին գրկած։

Ի՜նչ ցնծություն էր որսորդ Հայրապետի տանը։ Հարևանները եկան դիտելու պարտեզում, չոր խոտի վրա պառկած ձագուկին։ Ինքը՝ որսորդը նստել էր մոտիկ կոճղի վրա և հաստ ու կոպիտ մատներով ծխախոտ փաթթելով, ասում էր հետաքրքրասեր այցելուներին։

— Որ մեկից ասեմ... բան էր, պատահեց, բերեցի,— եզրափակում էր նա, և որպեսզի խնդրանքներին տեղի չտա, բարկանում էր եղնիկի չորս կողմը վխտացող մանուկների վրա։— Ձեռ մի՛ տվեք, հեռվից նայեցեք, չե՞ք տեսնում՝ ոնց է վախենում...

Ձագուկն աչքերը պլշած նայում էր երեխաներին և երբեմն ճիգ էր անում վեր կենալ տեղից։ Այդ ժամանակ երկարում էր բարալիկ վիզը և թույլ, մի տեսակ աղերսագին նվում։

— Վա՜յ, ջանի՜կս, ջանի՜կս,— կարեկցում էին փոքրիկ աղջիկները։

Դրանից էլ եղնիկի անունը մնաց Ջանիկ։

Մի քանի օր հետո փոքրիկ քաղաքում քիչ մարդ կար, որ տեսած չլիներ Ջանիկին։

— Եղնիկն արդեն վազում է...

— Փողոցում տեսնողներ են եղել, քիչ է մնացել ավտոյի տակ ընկնի,— ասում էին մարդիկ։

Երկու շաբաթ հետո որսորդի մոտ եկան քաղաքի պիոներ-տան մի խումբ պատանի բնասերներ։ Նրանք ուղղակի խնդրեցին՝ իրենց տալ եղնիկը, հավատացնելով, որ ավելի լավ կպահեն, քան նույնիսկ ձագուկի մայրիկը։

— Ազիտացիա մի՛ արեք,— կոպտեց որսորդը,— թող մեծանա... ամառն էլ գնում եք ճամբար-մամբա՞ր... Գնացեք խաղ արեք, դուք էլ մեծացեք, ինքն էլ...

Մուշեղն էլ պատանի բնասեր էր և նա հոր կոպիտ պատասխանից ամաչելով երկու անգամ չգնաց պարապմունքի։

— Մուշե՛ղ, օրագիր պահիր, գրիր Ջանիկի մասին և շաբաթը մի անգամ կկարդաս մեր խմբակում։

Այս հանձնարարությունը Մուշեղին ոգեվորեց։ Ուրեմն ընկերներն զգում են, որ ինքը մեղք չունի։ Եվ նա պատմեց մորը, բարի Մայկո մայրիկին։

— Ես քեզ կօգնեմ, իմ աչքն ավելի լավ է տեսնում ձագուկի աճը...

Այսպես, պատանի բնասերները Մուշեղի շնորհիվ ազատ ել ու մուտ էին անում նրանց տուն։ Շուտով Ջանիկն ունեցավ մոտ հիսուն լուսանկար։ Նա նկարահանված էր ամենատարբեր ձևերով։ Այդ լուսանկարներից մի-մի օրինակ Մուշեղը փակցնում էր օրագրի համապատասխան էջին։ Նա գրի էր առնում և հոր դիտողությունները։



...լեռներից իջավ ձագուկին գրկած։

— Հայրի՛կ, ես այսօր տեսա, թե ինչպես Ջանիկը պարտեզում, վարդաթփերից տերևներ պոկելու ժամանակ, հանկարծ ականջները խլշեց, չգիտես ինչից խրտնած ծուլելավ ու շատ թեթև թռավ թփերի վրայով. մի երկու ոստյունով հասավ պարտեզի ծայրը և կանգ առավ բարձր ցանկապատի առաջ։

— Արյունը խաղում է... կգա ժամանակ, ցանկապատից էլ կանցնի,— մի տեսակ մտահոգված պատասխանեց Հայրապետը։

Եղնիկին սիրում էին ինչպես ամենափոքրին։ Նրանք չէին թաքցնում իրենց գզվանքներն ու փաղաքշանքները։ Ջանիկն էլ մտերմացավ մարդկանց, հատկապես Մուշեղին, որն իր ձեռքով էր կերակրում նրան։ Որքա՜ն դուրեկան է, երբ Ջանիկը սև դընչիկը մոտեցնում, զգույշ, կարծես քաղաքավարությամբ, վերցնում էր ուտելիքը, իր խոնավ շունչը թողնելով Մուշեղի ձեռքի վրա։ Ամենից շատ նա միրգ էր սիրում, հատկապես չիր։ Մայկո մայրիկն ասում է՝ այդ նրանից է, որ Ջանիկի նորաբույս ատամները քոր են գալիս և չրի կոպտությունը նրան հաճելի է։ Երբեմն Ջանիկը շտապում, կուլ էր տալիս չիրը, երբ նկատում էր, որ Մուշեղի ձեռքին էլի բան կա ուտելու. բայց երբ կշտանար, ինչքան խնդրեիր՝ չէր ուտի։

— Կեր, կեր, վերջինն է, կեր,— խնդրում էր Մուշեղը։

Ջանիկը հոտոտում էր իրեն մեկնած չիրը, բայց առաջվա պես նուրբ ու փափուկ շուրթերը չէր բացում։

— Մի՛ ստիպիր,— ասում էր Մայկո մայրիկը,— դուռը բաց արա, թող գնա խաղա, կերածը մարսի։

Ջանիկն էլ հենց դրան էր սպասում։ Դուրս գալով բակ, նա հպարտ հայացք էր նետում շուրջը, գետինը հոտոտում և չգիտես ինչու ծվվալով ու մեկից ցատկելով սլանում էր պարտեզ։

Հողը գարուն էր շնչում։ Դա բոլորից շուտ եղնիկն էր զգում իր վայրի բնազդով։ Երկար պարանոցը թեքած հպարտ-հպարտ մոտենում էր բացված վարդերին, կարծես հոտ քաշում և թեթևակի փռշտալով, է՛լ ավելի կայտառ վազում ցանկապատից-ցանկապատ։ Իսկ երբ ջուր էր խմո՜ւմ... Նա մոտենում էր գուշին, մի պահ շուրջը նայելուց հետո խմում էր ու դեռ ծարավը չհագեցրած, գլուխը բարձրացնում։ Այդ ժամանակ նրա

սև ու սիրունիկ դնչիկից ծորում էր արծաթի պես ջուրը, որի մեջ դողդողալով, կարծես եղնիկի բերանից կախված, արտացոլված էր արևը։ Մուշեղը կլանված գրի էր առնում։

Գարուն էր և թվում էր, թե դա Ջանիկն էր բերել մեր լեռները։ Երկինք բարձրացած ծանր ամպերը ձուլվեցին իրար, փակեցին կապույտը։ Կայծակն իր օձագալար պտույտով անցավ ամպից ամպ։ Վախեցած Ջանիկը պարտեզից փախավ բակ, խրտնած կանգնեց դռան շեմին։



— Կեր, կեր, վերջինն է, կեր...

— Այս կենդանին էլ անտառում կապրի՞ գազանների մեջ,— զարմանում էր Մուշեղը։

Սակայն եղնիկը երևի հենց անտառի կարոտից հունիսյան մի գիշեր անհետացավ։ Տնեցիներից բոլորը, բացի որսորդից, դուրս եկան նրան որոնելու։

— Իզուր բան է, որ գալու լինի՝ կգա,— ասաց Հայրապետը մտածելով, որ կենդանին ընկեր է ուզում։— Ուրեմն ինչ՝ մորթե՞լ. չէ, դժվար է, ձեռքս չի զորի, թող փախչի գնա...

Մուշեղն իր ընկերներով շարունակում էր որոնել։

— Բա որ ասում էինք մենք պահենք,— ափսոսանքով ասաց պատանի բնասերներից մեկը։

— Որտե՞ղ պիտի պահեիր,— արդարանում էր Մուշեղը։

— Դպրոցի դիրեկտորը դպրոցամերձ հողամասում հատուկ տեղ էր խոստացել, որը և՛ ազատ լինի, և՛ բարձր ցանկապատած... Հետո կտանեինք, կնվիրեինք Երևանի գազանանոցին...

Որոնումներն իզուր անցան։ Ուշ գիշերին անհանգստացած բնակիչներն այնքան էլ բարյացակամ չընդունեցին նրանց։

— Չենք տեսել...

— Շները հաչում էին, երևի փախցրել են...

Ընկերները ցրվեցին, Մուշեղը վերադարձավ տուն։ Տանը դեռ արթուն էին։ Մուշեղը լուռ մոտեցավ օրագրին, ծուռ ու մուռ տառերով գրեց՝ «Ջանիկը կորավ» և ապա նրստելով մահճակալին ուզեց հանվել։ Հանկարծ ինչ-որ խշխշոց լսվեց։ Մուշեղը նետվեց դուրս։ Անձրև էր գալիս։

— Ջանի՜կ, Ջանի՜կ,— կանչեց նա, տխուր վերադարձավ, հանվեց ու պառկեց քնելու։ Նա շարունակ նայում էր անկյունում գցված մինդարին. սա էլ Ջանիկի տեղն էր... Մուշեղի աչքերի առաջ պատկերվում էր եղնիկն արդեն հոշոտված. ուղղակի լսում էր, թե ինչպես եղնիկի բարալիկ ոսկորները ճարճատում են գայլի երախում։ Ծանր մտապատկերների մեջ էլ քնեց Մուշեղը։ Իսկ Ջանիկն այդ ժամանակ դնչիկով «ծեծում» էր դուռը, իրեն ձայնին հատուկ ծկլթոցով աղերսում բաց անել։

— Մուշե՛ղ, Մուշե՛ղ,— կանչեց մայրը,— մի տես ով է դուռը չանգռում։

Մի վայրկյան հետո դռների մոտ գրկախառնվել էին Մուշեղն ու Ջանիկը։ Թաց էր եղնիկը, հևում էր և այնպես գգվում Մուշեղին։

Տնեցիներն արթնացան։

— Տեսա՞ք. որ ասում էի գալու լինի կգա՜,— խոսեց որսորդը,— դրան եղնիկ կասեն, իր պատսպարանը չի մոռանա... Բայց քիչ էլ որ մեծացավ, էլ չի մնա, կփախչի... դե՛, խաղաղվեք... տեղնե՛րդ,— հրամայեց նա։

Բոլորն անցան իրենց տեղերը։ Մուշեղը, երջանկությունից մոռանալով մանրամասները, օրագրի տխուր էջն ավարտեց այսպես. «Եկավ, երևի անձրևից պաշտպանվելու համար»։

Եղնիկն արդեն պառկել էր իր փափուկ մինդարի վրա և կծկված քնել։

Այնուհետև սովորություն դարձավ Ջանիկի հաճախակի անհետանալը։ Իսկ ամռանը մի քանի որսկաններ զգուշացրին Հայրապետին, որ իրենց եղնիկին հսկեն, որ նրան արդեն հանդիպում են անտառի փեշերին։

— Պիտի մորթել,— ասել էին նրանք։

Եղնիկը լցվել, գեղեցկացել էր։ Մի գիշեր էլ բոլորովին չվերադարձավ։ Հայրապետը նախ ափսոսաց, որ չմորթեց, բայց և ուրախացավ, որ բանն այսպես վերջացավ։ «Մեղք է»։ Ուրիշ բան է, որ անտառում երկար հետապնդումից հետո հանդիպես ու տրաքտրաք՝ փռես գետին, թե չէ բերես տուն, երեխայի պես պահես ու հետո... չէ՛, լավ է, որ անհետացավ...

Բայց արևը չծագած եղնիկն էլի տանն էր։

— Հայրի՛կ, կապենք...

— Կապես՝ իրեն կսպանի, չի դիմանա... սա որ չվազվզի, որ ազատ ման չգա, կսատկի...

— Ձիով տանենք խոր ծմակում բաց թողնենք,— շարունակում էր առաջարկել տղան։

— Չէ՜, չէ՜, պահել եմ, մեծացրել, որ տանեմ որսկանների ձեռքը, թե՝ կերե՞ք... Սա, որ մարդ տեսնի՝ չի փախչի... դա ավելի վատ...

— Գազանանոց տանենք...

— Երկար պատմություն է...

Մեկը մյուսից տխուր բովանդակություն ունեին Մուշեղի օրագրի էջերը։

Մի առավոտ Մուշեղն արթնացավ ներքին տագնապով. անմիջապես նայեց պատի տակ դրված դատարկ մինդարին։ Ջանիկը դարձյալ չկար։ Մուշեղը նայեց հոր անկողնին։ Չկար և Հայրապետը։ Տագնապը սաստկացավ։ Դրսից ինչ-որ աղմուկ էր լսվում։ Մուշեղը դուրս եկավ բակ։ Անձրև էր կաթկթում։ Քաղաքի վրա իջել, փռվել էր ծանր մի մշուշ։

— Հայրի՛կ,— կանչեց Մուշեղը։

Պատասխան չկար։ Բայց որտեղի՞ց էին գալիս խոսակցության ձայները։

— Ջանի՜կ, Ջանի՜կ...

Եղնիկն էլ չկար։

Մուշեղը դեպի պարտեզ գնաց։ Մշուշի մեջ, թթենու տակ նա նշմարեց մի խումբ մարդկանց, որոնք կանգնել էին ինչ-որ ընկած բանի շուրջը։ Մուշեղի ոտները թուլացան։ Մի քանի քայլ ևս և նա լսեց հոր ձայնը։

— Բա վայրին ու տնականը չզանազանեցի՞ք... բա չէի՞ք զգում, որ սրան մարդու շունչ է դիպել, ու ձեզնից էլ չի փախել... Ո՞նց է ձեռքներդ բռնել, կրակել եք անմեղ կենդանու վրա...

Մուշեղն ամեն ինչ հասկացավ։ Այո, խմբված մարդկանց առաջ փռված էր Ջանիկը։ Չիմանալով նրան սպանել էր հարևան գյուղից մի երիտասարդ որսորդ։

Մուշեղը տխուր ետ դարձավ. Նրա օրագրում այլևս ոչինչ չգրվեց Ջանիկի մասին։



# ՎԱՀՐԱՄԻԿԻ Նավակը



ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Նկ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆԻ

Թղթե նավերն է բերել
Ավազանի մեջ շարել
Վահրամիկը իր բոլոր:
— Նավատո՞րմն է իմ հզոր...
Ո՞ր կողմից է, գիժ քամին,—
Հարց է տալիս Արամին:
Իսկ Արամը լրջադեմ
Ասում է, թե՝— Չգիտե՛մ...
Լավ կլինի՝ դու նստիր
Ու դեպի ծով սլացիր.
Ես էլ նստեմ՝ տար հեռու.
Կամ գնա կետ որսալու...
Ինչպե՞ս խոսեր նրա հետ
Վահրամիկը նավապետ:
Նայեց ջրին, նավերին,
Պատասխանեց Արամին.
— Ուզում ես, որ նավ, նավակ,
Ամբողջ իջնի ծովի տա՞կ:
«Ճիշտ է ասում Վահրամը»—
Մտածում է Արամը:
Նավերն, ախր, թղթից են
Մի խիճ դնես՝ կսուզվեն:
Բա ի՞նչ անեն, ի՞նչ անեն,
Նավատորմը ո՞ւր տանեն...
Մեկ էլ Վահրամն աչքաբաց
Ջուրը խառնեց ու ասաց.
— Երբ ես դառնամ ա՛յ, այսքան,
Նավեր շինեմ իսկական,
Ինչքա՛ն կուզես բեռ բարձիր,
Գնա հեռու, ետ դարձիր.
Կուզես հանիր հենց դեկը
Չես խորտակի ոչ մեկը:
Կանչեց հպարտ. և շտապ
Քշեց նավերն ափից ափ:



# ԱՐԾԻՎՆԵՐ

Վ. ԱՏՐՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Մի շաբաթ շարունակ Թոռնիկս խնդրում էր, որ իրեն հետս տանեմ որսի։

Իմանալով, որ այդ օրը ես որսի եմ գնալու, նա ինձանից շուտ էր արթնացել, հագել իր երկարավիզ կոշիկները, ուսից կախել որսորդական պարկն ու ջրամանը։ Ես չընդդիմացա։

Լուսաստղը նոր էր ծագել, երբ ճանապարհ ընկանք։ Երբ լույսը բացվեց, մենք քարքարոտ կածաններով արդեն բարձրանում էինք ժայռերի գագաթները, մտնում խոր ձորերն ու քարանձավները և Ջեկի թռցրած կաքավները որսալով, առաջ շարժվում։ Բայց կաքավները, նապաստակներն ու տատրակները չէին հետաքրքրում Թոռնիկիս։ Նա արծիվներ էր որոնում և անվերջ խոսում նրանց մասին։



...նա ցույց էր տալիս արծիվներին։

Մայրամուտին մի լորենու ստվերում նստեցինք հանգստանալու։ Թոռնիկս կրակ էր վառել և կաքավներ էր խորովում։ Նա այլևս չէր խոսում արծիվների մասին։ Հույսը կտրել էր։ Նոր էինք ճաշակել կաքավի համեղ խորովածը, երբ մեր գլխի վրայով մի արծիվ սլացավ։ Թոռնիկս վեր թռավ տեղից։ Նա այնպես շփոթվեց, որ հազիվ կարողացավ արտասանել «արծիվ» բառը։ Արծիվը սուրաց դեպի դիմացի ժայռի ստորոտը։ Լսվեց կաքավի օրհասական կչկչոցը. ապա արծիվը կրկին բարձրացավ վեր։ Նա տանում էր ճանկերում ամուր պահած կաքավին։

Թոռնիկս աչքերը լայն բացած, երկար ժամանակ նայում էր արծվի հետևից, մինչև որ նա անհետացավ։

Բռնեցինք վերադարձի ճանապարհը։ Եվ հանկարծ իմ հետևից լսեցի Թոռնիկիս ձայնը։

— Պա՛պ, պա՛պ, արծիվնե՜ր, արծիվներ... գնանք, շո՛ւտ գնանք,— գոչեց նա և շնչակտուր հասավ ինձ։ Մատը մեկնած դեպի լեռան գագաթի ժայռակույտերը, նա ցույց էր տալիս արծիվներին, որոնք թևերը թափահարելով թռչում էին քարից՝ քար։

— Բարձրանանք, պա՛պ, ի՞նչ կլինի, բարձրանանք,— համառորեն առաջարկում էր նա։

Ապա նա թողեց ինձ և սկսեց մագլցել դեպի վեր։ Ես ակամա հետևեցի նրան։

Գնում էր նա, Ջեկի վզնոցը ամուր պահած ձեռքին։ Այնքան էր հրապուրված, որ անվերջ շտապեցնում էր ինձ և դանդաղաշարժության համար կշտամբում։

Վերջապես մենք հասանք լեռան գագաթի նիզակաձև ժայռերին։ Սակայն աչալուրջ, հեռատես արծիվներն անցել էին հարևան ժայռի գագաթը։ Նկատելով մեզ, արծիվներն իսկույն թռան ու բարձրացան վեր՝ դեպի երկինք։

Մենք նստեցինք արծիվների բնից ոչ հեռու և դիտում էինք վերջալույսը։

Կապույտ լեռների հետևում արևն իր հրա-

*ժեշտն էր տալիս բնությանը։ Շուրջն ամեն ինչ փայլում էր շլացուցիչ գեղեցկությամբ։ Անտառակում երգում էին տատրակները, մարգագետիններում թիթեռնիկներն ու մեղուները գգվում էին գեղածիծաղ ծաղիկներին։ Ամենուրեք լսվում էին աշխատանքից վերադարձող հնձվորների կանչերը, տրակտորների հռնդյունը, հոտաղների երգերը։*

*Հանկարծ Թոռնիկս բռնեց թևիցս ու գոչեց.*

*— Արծի՜վը, արծի՜վը, պա՛պ։*

*Արծվի ձագերից մեկը բաժանվելով յուրայիններից, չարաճճի խաղով սրընթաց իջավ և օդում սկսեց թափահարել թևերը։ Հրացանս ուղղեցի դեպի նա։ Առաջին իսկ զարկից արծվիկը վիրավորվեց և օդում պտտվելով ընկավ քարերի մեջ։*

*Թոռնիկս Ջեկի հետ վազեց դեպի արծվիկը։ Տեսնելով արծվիկի թևից հոսող արյունը, Թոռնիկս խղճահարվեց, ձեռքը մեկնեց, որ բռնի նրան։ Արծվիկը այնպիսի մի խիզախ թռիչք գործեց նրա գլխավերևը, որ տղան սարսափած ետ քաշվեց։ Ջեկը ևս չէր համարձակվում մոտենալ։ Նա միայն պտտվում էր վիրավոր արծվիկի շուրջը և կաղկանձում։ Թոռնիկս նորից փորձեց մոտենալ արծվիկին։ Նա կրկին վշշացրեց, բարձրացրեց գլուխը, բացեց կեռկտուց բերանը և թափով հարձակվեց մանկան վրա։*

*Մենք կապեցինք նրա սրաճանկ ոտքերը։ Արծվիկը ազդեցիկ ձայնով սկսեց բողոքել.*

*— Տի՛վ, տի՛վ, տի՛վ…*

*Ամբողջ ճանապարհին նա կանչում էր և ուզում ճանկերը խրել ձեռքերիս մեջ։ Երբ իջանք լեռան գագաթից և ընկանք անտառակի եզրով գնացող ճանապարհը, լսեցինք նույնանման մի կանչ։ Կանգ առանք։ Մեզնից շատ հեռու նկատեցինք հսկա մի արծվի, որն անտառի եզրով, շատ ցածր թռչելով, հետևում էր մեզ և պատասխանում արծվիկի կանչերին։*

*— Մայրն է, պա՛պ,— երկյուղած շշնջաց Թոռնիկս։*

*Խավարը թանձրացել էր, երբ մենք հասանք գյուղի ծայրամասին ընկած մեր տունը։*

*Տանը մենք իսկույն վիրակապեցինք արծվիկի թևը։ Փորձեցինք կերակրել, բայց նա ոչինչ չկերավ։ Հարձակվում էր, կծոտում։ Մենք նրան ցերեկները դնում էինք այգու խորքում ընկած տաղավարի գլխին, որ ազատ ու հանգիստ զգա իրեն։ Նա ուրախ էր այդ բանից և երբեմն կանչում էր։*

*Երրորդ օրը, երեկոյան դեմ, բակի հավերը խուճապով սկսեցին փախչել ու պատսպարվել տանիքի տակ։ Աքաղաղները ծղրտացին, թխսերն անօգնական ճուտերին*



Ջեկի հետ վազեց դեպի արծիվը։

*առան իրենց թևերի տակ։ Դրսում լսվեց տատիկի տագնապալից ձայնը. հո՛ւյ, հո՛ւյ, հո՛ւյ…*

*— Տարա՜վ, տարա՜վ,— գոռում էին ամեն կողմից։*

*Բոլորս դուրս վազեցինք, համոզված, որ ուրուրը հավ տարավ. բայց դա ոչ թե ուրուր էր, այլ մայր արծիվը։ Նա հարձակվել էր տաղավարի վրա, հափշտակել իր վիրավոր ձագին և տանում էր բարձրաբերձ լեռան կատարին թառած իր բույնը։*

*— Այո, ազատություն սիրողների համար ամոթաբեր գերությունը մահից սարսափելի է,— շշնջացի ես արծվի հետևից։*

# ՅՈՅ ԷՆԸ ԵՎ ԼՈ ՇԵՆԸ

ՍԱՐՄԵՆ

Նկ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

Յոյ էնը՝ շեղաչ մի ժիր պատանի,
Սահում էր սառած մեծ գետի վրա,
Ինչպես խնձորներ մեր Հայաստանի,
Կարմրել էին այտերը նրա:

Խաղում էր տղան ու մեկ էլ հանկարծ
Ռումբի լայն բացած խորխորատն ընկավ.
Ջրերի միջից ճչաց, հեկեկաց,
Բայց անարձագանք այդ ձայնը հանգավ:



Հովտում ամեն ինչ լուռ էր, քարացած,
Միայն քամին էր ոռնում կատաղի.
Մշուշն էր դանդաղ սարից իջնում ցած,
Ծածկելով ճամփան հայրենի գյուղի:

Սառույցն էր կտրում ձեռքերը դալար,
Գետը ուզում էր կուլ տալ տղային.
Կանչում էր էնը, կանչում միալար,
Բայց շուրջը ձյունի ծովն էր ամայի:

Լո Շենը, ջահել կամավորը չին,
Որ զորամաս էր գնում գետափով,
Ականջը էնի աղերսող կանչին՝
Արծվի թև առած սլացավ թափով:

Հասավ վերքի պես բացված լայն անցքին,
Հանեց, դեն նետեց իր բանկոնը տաք,
Երեսը դաղող սառնամանիքին՝
Նետվեց գետի մեջ, սուզվեց ջրի տակ:

Փնտրեց տագնապով, լողաց չորս բոլոր,
Մինչև կարկամած Յոյ էնին գտավ.
Մանկան մարմինը՝ անկրակ, անզոր,
Ճակատը դալուկ՝ գունաթափ կտավ:

Յոյ էնը ամուր փարվել էր Շենին,
Ինչպես անդրանիկ եղբոր սրտակից.
Շենը տքնում էր հանել Յոյ էնին
Հաստաշերտ փռված սառույցի տակից:

Մաքառում էր նա ցրտի, ջրի դեմ,
Շալակը առած դողահար էնին.
Հույսի կրակը կայծկլտում էր դեռ,
Ուժերը թեև սպառվում էին:

Ու նա լողալով, կամքով աներեր,
Նորից մոտեցավ սառցի բացվածքին,
Վերջին ճիգերով բարձրացրեց վեր
Մահվան երախից խլած էակին:

Եվ վրա հասած մի ուրիշ մարտիկ
Տղային առավ փրկարար ձեռքից
Ու դիմեց դեպի կայանը մոտիկ՝
Այնպե՛ս սրտացավ, այնպե՛ս կարեկից:

Կիսամեռ էնին ջերմորեն գրկած՝
Գնում էր շտապ զինվորը տրտում.
«Դուրս կգա Շենը գետից անկասկած,
Նրա պես լողորդ ո՞վ կա մեր գնդում»:

Խորհում էր այսպես. մեկ էլ ետ նայեց,
Տեսավ զինակից ընկերը չկա.
Սեղմիկ մրմնջաց. «Այս ի՞նչ պատահեց,
Ինչո՞ւ Լո Շենը ուշացավ, չեկավ»:

Ու հանկարծ նրա ականջին հասավ
Օգնության կանչող մի խուլ արձագանք.
Նա ուշքը լարեց. «Լո Շենն է»— ասաց,
Էնին ցած դրեց, սլացավ արագ...

. . . . . . . .

Զինվորը գետից ճանեց Լո Շենին,
Բայց չէր բաբախում սիրտը ճերոսի,
Շուրթերը ասես դողդողում էին
Եվ թվում էր, թե ահա կխոսի:

Ապրում է էնը, բայց Լո Շենը Քաջ
Զոհվեց՝ սպառած ուժերը վերջին...
Թող ճավերժ ապրի Կորեա եկած
Փրկության գնդի այն մարտիկը չին:

Հիմա ճեռավոր Սակչան ավանում,
Բարձր լեռների վեհ ճովանու տակ
Մի նոր արձան է երկինք բարձրանում
Ե՛վ ճաղթաճասակ, և՛ գեղաքանդակ:

Թարմ ծաղիկների պսակների մեջ
Լո Շենը ահա կանգնել է լռին,
Ու ողջ Կորեան, Չինաստանը մեծ
Պատիվ են տալիս անմաճ զինվորին:

---

# ՋԱՐՄԵՆԱԼԻ ՄԱՅՐԻԿԸ

ԱԼԲ. ՇԱՀԱԶԻԶՅԱՆ

Ֆոտո՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

Վաղ առավոտյան ավտոմեքենան իջնում էր դեպի Զանգվի գեղատեսիլ ձորը: Մի քանի րոպեից հետո նա կանգ առավ ընդարձակ բակում, երկու հարկանի մի սովորական շենքի առաջ:

— Իջեք, տեղ հասանք,— ավտոմեքենայի թափքից ցատկելով ասաց կոլտնտեսության թռչնաբուծական ֆերմայի վարիչը՝ Վարդանը և օգնեց պիոներներին ցած իջնելու:

Նրանք գտնվում էին Գյուղատնտեսության մինիստրության Երևանի № 2 թռչնաբուծական կայանում: Կայանի աշխատողները հին ծանոթի պես ընդունեցին նրանց:

— Սրանք մեր պատանի թռչնաբույծներն են, մեր օգնականները. եկել են, որ իրենց աչքով տեսնեն ինկուբատորը,— ասաց քեռի Վարդանը:

— Շատ լավ, մեզ մոտ պրակտիկանտներ էլ են եկել. գնանք նրանց մոտ, այնտեղից էլ կսկսենք,— սիրալիր ասաց ավագ զոոտեխնիկ Արաքսիա Մարտիրոսյանը:

Բոլորը հետևեցին նրան: Նրանք մտան մի սենյակ, որտեղ մաքուր ու սպիտակ խալաթները հագներին տաս-տասներկու կին արկղներից ցեղական հավերի ձվերը հանում ու դարսում էին սեղաններին: Պրակտիկանտներից մի քանիսը սեղանի վրայից ձվերը վերցնելով, զգուշությամբ դասավորում էին ցանցավոր հատակ ունեցող մետաղե երկարավուն հատուկ արկղների մեջ: Դրանցով էլ պետք է ձվերը տեղավորեին ինկուբատորների մեջ:

— Իսկ որտե՞ղ է ինկուբատորը,— անհամբեր հարցրեց Մարիետան:

— Տեսնում եմ, որ շատ եք շտապում,— նորից ասաց ընկեր Արաքսիան և նրանց տարավ առաջին հարկի ընդարձակ սրահը:

Սրահում փակ տուփերի պես, իրարից քիչ հեռու դրված էին երկու մետաղյա սենյակներ. այո, իսկական սենյակներ, բայց առանց լուսամուտների...

— Այս էլ մեր ինկուբատորները: Դրանց նմանը մեր նախնիները չէին կարող ունենալ,— ասաց Արաքսիան և բոլորին հրավիրեց դեպի սեղանը:

— Հին ժամանակ էլ է՞ ինկուբատոր եղել,— մի փոքր քաշվելով հարցրեց Հրաչիկը:

— Իհարկե, եղել է,— խորամանկորեն աչքերը կկոցելով ասաց ավագ զոոտեխնիկը:

Պարզվեց, որ արհեստական եղանակով ճուտ ստանալը նորություն չէ: Այդ բանը մարդկությանը հայտնի է եղել հին ժամանակներից: Մեզանից երկու հազար հինգ հարյուր տարի առաջ Եգիպտոսի ու Չինաստանի կրոնավորները, որոնք քուրմեր էին կոչվում, կարողանում էին առանց թխսի ճուտեր ստանալ և դա խիստ գաղտնի էին պահում ժողովրդից:

Հնագույն ինկուբատորը քարե կամ աղյուսե երկտակ պատերով մի մեծ շենք է եղել:

Մեջտեղից անցնող երկար միջանցքի երկու կողմի քառակուսի փոքր սենյակներում դըրվել են ձվերը։ Այդ սենյակները տաքացվել են էժան վառելիքով՝ աթարով...

Զրույցի ընթացքում նրանց խմբին էր միացել ինկուբատորների աշխատանքին հետևող էլեկտրո-մեխանիկ Հովհաննես Հրաչյանը։ Արաքսիան խնդրեց մեխանիկին, որ բացատրի ինկուբատորի կառուցվածքը։

— Խնդրեմ, ներս գնանք,— հրավիրեց մեխանիկը, բաց անելով ինկուբատորի մետաղե դուռը։



Երեխաները մեկը մյուսի հետևից վախվըխելով, ներս մտան։ Դա մարդու հասակից բարձր մի քառակուսի սենյակ էր, որի դրսի պատերը, առաստաղն ու հատակը ամուր մետաղից էին պատրաստած։ Սենյակը միջանցքով կիսված էր երկու մասի։ Միջանցքի երկու կողմը, հատակից մինչև առաստաղ, պատերի պես կախված էին թանձր վարագույրները։ Հենց այդ վարագույրների հետևում էին գտնվում վեց հարկանի երկաթե դարակները, որոնց վրա հագցվում են ձվերով լի երեսունվեց արկղը։



Դռան հակառակ կողմը, միջանցքի պատի խորշում, մերթ շիկանում, մերթ հանգչում էր էլեկտրական վառարանը, ինչ-որ տեղ աղմկում էր մոտորը։ Փչում էր տաք ու խոնավ օդի ուժեղ հոսանքը։

— Բայց թխսի թևի տակ այսպիսի քամի չկա,— միամտաբար ասաց Պավլիկը։

— Ապա ձեռքներդ վարագույրից ներս տարեք,— առաջարկեց մեխանիկը։

Բոլորն իսկույն փորձեցին։ Ա՛յ քեզ բան. ամեն ինչ խաղաղ էր այնտեղ. քամին միայն միջանցքում էր։ Դա էլ առաջանում էր ուժեղ օդափոխությունից։ Իսկ վարագույրների հետևում պահպանվում է այն ջերմությունը, ինչ-որ ունեն հավը, սագը, բադը, հնդկահավը թուխս նստելու ժամանակ։ Քնարիկը ուշադիր նայում էր ջերմաչափին։ Նա ցույց էր տալիս երեսուն յոթ ու կես աստիճան։

— Իսկ ի՞նչ կպատահի, եթե հանկարծ բարձրանա ջերմությունը,— հետաքրքրությունից վառվող աչքերը մեխանիկին հառելով հարցրեց նա։

— Եթե ջերմությունը բարձրանա կամ թեջնի,— ասաց մեխանիկը,— սաղմը չի զարգանա ձվում և ճուտ չի գոյանա։ Բայց այդպիսի բան չի պատահի։ Նայեցեք ջերմաչափին. եթե մի աննշան գծիկով ջերմությունը փոխվի, էլեկտրական վառարանը, որը տաքացնում է ինկուբատորը, ավտոմատ կերպով, առանց մեզ հարցնելու, անջատվում կամ միանում է. այնպես որ միշտ հավասար ջերմություն է պահպանվում։

Մեխանիկ ընկեր Հովհաննեսը վերցրեց դիմացի պատի խողովակի կափարիչը, որտեղից գալիս էր մոտորի աղմուկը։ Մոտորի աշխատանքով դրսից ներծծվում է թարմ օդը, որ անհրաժեշտ է ճուտերի համար և դուրս է մղվում վնասակար օդը։ Սաղմի և ճուտի զարգացման համար անհրաժեշտ է նաև, որ օդը խոնավ լինի։ Եվ ահա, այդ նույն մոտորի միջոցով դրսից եկող ջուրը փոշու պես ցրվում և խոնավություն է տալիս օդին։

Պավլիկը մի անհանգիստ շարժում արեց. ձեռք բարձրացրեց, ինչպես այդ անում էր դասարանում և հարց տվեց.

*— Ես մեր ֆերմայում տեսել եմ, որ թուխսը միշտ խառնում է տակի ձվերը, ինկուբատորո՞ւմ էլ է այդ բանը կատարվում։*

*— Այդե՜ս, քիչ էր մնում մոռանայի,— ասաց Հովհաննեսը և ետ քաշեց վարագույրը։*

*Նա ցույց տվեց, թե ինչպես ձվերով լիքը բոլոր երեսունվեց արկղներն էլ մեխանիզմի օգնությամբ օրական 6—8 անգամ մի կողմից մյուսն են շրջվում։ Եթե այդպես չարվի, ապա սաղմը կնստի հատակին, կճեպից կկպչի և ճուտ չի գոյանա։*

*Այժմ ամեն բան պարզ էր։ Քսան կամ քսանմեկերորդ օրը ճուտիկներն սկսում են դուրս գալ։ Վերջին օրերին ավելի շատ խոնավություն են տալիս, որպեսզի ձվերի կճեպները փափկեն և ներսից նրանք հեշտ կարողանան ծակել-դուրս գալ։*

*Երկու հազար տարի գաղտնիք մնաց ինկուբատորը, մինչև որ մարդկությանը հաջողվեց նորից առանց թխսի ճուտեր ստանալ։ Դա տեղի ունեցավ տասնութերորդ դարում։*

*Ինկուբատորի կառուցվածքը համարյա նույնն է մնացել, բայց նրա մեջ մեծ փոփոխություններ են կատարվել։ Սովետական ինժեներները ստեղծեցին աշխարհում ամենահզոր ինկուբատորները։ Պատանի թռչնաբույծների ուսումնասիրած ինկուբատորը կոչվում է «Ռեկորդ»։ Նրա հեղինակն է Ստալինյան մրցանակի լաուրեատ Բորիս Կոնստանտինովիչ Գուրեցկին։ Այս ինկուբատորով տարվա բոլոր եղանակներին կարելի է միանգամից 39—40 հազար ճուտ թխավորել։*

*— Դե՛, երեխաներ, ուշանում ենք,— բաց դռնից լսվեց քեռի Վարդանի ուրախ ու զվարթ ձայնը։— Ճուտերը արկղներում տեղավորենք ու գնանք, քանի շոգ չէ, թե չէ ճուտերը կթուլանան։*

*Բոլորը գնացին ճուտանոց, ուր հազարավոր նոր դուրս եկած ճուտեր խռնվել էին իրար, վազվզում էին դես ու դեն, ծվծվում էին, ընկնում ու վեր կենում...*

*— Վա՛յ, այս ինչքան շատ ե՜ն,— զարմացած բացականչեցին երեխաները և սկսեցին խնամքով ու զգուշությամբ բռնել և մեկ-մեկ դնել հատակը հարդով ծածկած արկղների ու զամբյուղների մեջ։*

---

# ԾԻԱԾԱՆ

ՀԵՆՐԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Ա. ՉԻՖԼԻԿՅԱՆԻ

Հորդ անձրևը դադարեց
Ժպտաց արևը իսկույն,
Հորիզոնը զարդարեց
Ծիածանը գույնզգույն:

Աչքերն հառած երկնքին,
Մանուկները հիացած
Գոչում էին ճռնվանքից.
— Բարև՜, բարև՜, ծիածա՛ն:

Իսկ ծիածանը հպարտ
Կարծես ասում էր այսպես.
— Լավ նայեք ինձ, փոքրիկնե՛ր,
Կանհետանամ հիմա ես:



Մանուկները միաձայն
Գոչում էին.— Չգնա՛ս,
Ի՞նչ կլինի, ծիածան,
Քիչ էլ, քիչ էլ դու մնաս։

Բայց ծիածանը մեկ էլ
Կապույտի մեջ չքացավ...
Փոքրիկները դեռ կանգնել
Սպասում են հիացած։

---

# ՕԼՋԱՆԻ ՈՐՍԸ

Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

*Պարզ ու վճիտ առավոտ էր։ Ես ու չուկչի Տատոն գնում էինք միասին։ Մեր առջևից հաստատ ու վստահ քայլում էր նրա տղան՝ տասնվեց տարեկան Օլչանը։ Պատանու գոտուց կախված էր որսորդական դանակը, իսկ ուսին երկճյուղանի մի փայտ կար։ Չուկչի Տատոն հրացան չէր վերցրել։ Նրա կաշվե անդրավարտիքի գրպանում երևում էր դանակի ոսկրյա բռնակը։ Ես էլ վերցրել էի հրացանս և անհրաժեշտ պարագաներ։*

*Դեռ երեկ Տատոն ինձ ասել էր, որ գնալու ենք արջ որսալու։ Ես առաջին անգամն էի գնում արջաորսի. դրա համար էլ շատ անհանգիստ էի... Բայց թե Տատոն ինչո՞ւ է առանց հրացանի, ինչո՞ւ է նա իր հետ վերցրել տասնվեց տարեկան իր միակ որդուն, չեմ կարողանում հասկանալ։ Երբ մենք սկսեցինք իջնել դեպի կիրճը, հարցրի Տատոյին։*

*— Այսօր երևի արջի որսի չե՞նք գնում։*

*Տատոն ծխամորճը վառեց ու իրեն հատուկ հանգստությամբ ասաց.*

*— Գնում ենք։*

*— Առանց զենքի՞,— նորից հարցրի ես։*

*— Մենք հո բադերի, սագերի կամ կաքավների որսի չենք գնում, որ հրացաններ վերցնենք,— պատասխանեց նա։*

*Ես ամաչեցի անհեթեթ հարցիս համար։ Առաջին անգամն էի տեսնում տայգայի այդ հմուտ որսորդին առանց հրացանի և ուսերիս վրա ակամայից զգացի իմ երկփողանի հրացանի ծանրությունը. զգացի, թե ինչպես փամփուշտակալը սեղմում է գոտկատեղս։*

*Հասկացա, թե որքա՜ն ծիծաղելի է, երբ քայլում ես իսկական փորձված, բայց անզեն որսորդի հետ, իսկ դու ինչ-որ սկսնակ որսորդ, մեծամտորեն զինված ու հնդուհավի պես փքված ես։*

*Մենք մոտենում էինք կիրճին։ Լեռների կատարներից այնտեղ էին իջնում ամպերի քուլաները։ Օդն անշարժ էր։ Ավելի հաճախ էին պատահում կապույտ հապալասի ու ցախկեռասի թփուտները։ Նրանց փոքրիկ մուգ կապույտ պտուղները փայլում էին առավոտյան ցողի կաթիլներից։ Տայգան լուռ էր։ Քիչ հետո մեր առաջ բացվեց մի ընդարձակ դաշտավայր՝ լի հապալասի պտուղներով։ Խայտաբղետ մամուռի գորգերի վրա նրանք նմանվում էին սաթե ուլունքների.*



— Չկրակես, դեն գցիր խաղալիքդ։

*իսկ թփերը կարծես ձեռագործի նուրբ հյուսվածքներ լինեին։ Տատոն կանգնեց.*

*— Սպասիր,— ասաց նա որդուն,— արջերը կապույտ հապալասի պտուղները շատ են սիրում։*

*Մեր կանգնած տեղում մի խեժոտ փիչի*

# ՊԱՏԱՆԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴԻՆ

Պիոնե՛ր, այս էջերում տպագրված աղյուսակների միջոցով դու կարող ես սովորել պատանի ճանապարհորդի համար անհրաժեշտ ճանապարհային նշանները և իմանալ, թե ինչպես պետք է խոսել հեռագրական այբուբենով: Դրանք հարկավոր են քեզ ամեն մի արշավի, հեռավոր ճանապարհորդության, էքսկուրսիայի և հետաքրքիր խաղեր կազմակերպելու ժամանակ:

Այբուբենը հաղորդելու, ճանապարհային նշաններ կազմելու և նկարելու համար օգտագործիր դրոշակներ, վզկապներ, փայտի կտորներ, կավիճ և ածուխ: Այս պայմանական նշաններով դու կարող ես հաղորդել տեղեկություններ քո ընկերներին:

## ՃԱՆԱՊԱՐՀԱՅԻՆ ՆՇԱՆՆԵՐ

| | Նշաններ ծառերի վրա | Նկարներ գետնի և ձյան վրա | Նշաններ՝ հողից | Նշաններ՝ ձյունից | Հետքերից կազմված նշաններ | Նշաններ եղեգնից և խեցիից |
|---|---|---|---|---|---|---|
| Գնա՛ այս ուղղությամբ | | | | | | |
| Թեքվիր աջ | | | | | | |
| Զգո՛ւյշ. առջևում վտանգ կա | | | | | | |
| Կա՛նգ առ. առաջ գնալ չի կարելի | | | | | | |
| Այստեղ խմելու ջուր կա | | | | | | |
| Այս ջուրը խմել չի կարելի | | | | | | |
| Չորս քայլի վրա՝ նամակ | | | | | | |
| Այստեղ նամակ կա | | | | | | |
| Այնտեղ, ճամբար կա | | | | | | |
| Այստեղ՝ դադար | | | | | | |
| Այստեղ՝ գետանց | | | | | | |

# ՍՈՎՈՐԻՐ ԽՈՍԵԼ ԴՐՈՇԱԿՆԵՐՈՎ



Ճ – – · –

Մ – –

Ն – ·

Շ – – – –

Ո, Օ – – –

Չ, Ջ – – – – ·

Պ · – – ·

Ռ, Ր · – ·

Ս · · ·

Վ · – –

Տ –

Ց, Ձ – · – ·

ՈՒ · · –

Ւ · · – – ·

Ֆ · · – ·

ՅԱ · – · –

ՅՈՒ · · – –



digitised by A.R.A.R.@

| | |
|---|---|
| 1 | ·−−−− |
| 2 | ··−−− |
| 3 | ···−− |
| 4 | ····− |
| 5 | ····· |
| 6 | −···· |
| 7 | −−··· |
| 8 | −−−·· |
| 9 | −−−−· |
| 0 | −−−−− |
| . | ······ |
| , | ·−·−·− |
| : | −−−··· |
| ! | −−··−− |
| ? | ··−−·· |


Տառի վերջը


Բառի վերջը


Կանչել


Պատրաստ եմ հաղորդման


Խոսակցությունը վերջացած է։

ծառ էր ընկած։ Նստեցինք այդ ծառի վրա։ Չուկչի Տատոն լարված ուշադրությամբ նայեց շուրջը, մաքրեց ծխամորճը, ծխախոտ լցրեց, պնդացրեց և ինչ-որ բան ասաց որդուն։ Օլչանը դանդաղ վեր կացավ, ձեռքի երկճյուղանին ուսին դրեց և շատ կամաց ու անտարբեր մտավ ցախկեռասի ու հապալասի թփերի մեջ։ Երբ նա հեռացավ, քիչ հետո նկատեցի, որ գլխի վրա ինչ-որ կարմիր լաթ է ծածանում։

Հանկարծ թփերը քամու հոսանքից շարժվեցին ճիշտ այնպես, ինչպես հասած արտի մակերեսը։ Ես որ մինչ այդ ոչնչի մասին չէի մտածում, կաթվածահարի պես տեղիցս վեր թռա։ Օլչանը գլուխը կախ գնում էր դեպի գետը, թափահարելով կարմիր լաթի կտորը։ Մի ահագին գորշ արջ էլ հապալասի թփերը ջարդելով սլանում էր դեպի նա։ Ես հրացանն իջեցրի ուսիցս։ Ահագին կենդանին ինձնից հեռու չէր։ Կապարի գնդակներով լցված փամփուշտներն շտապով փողի մեջ դրեցի։ Տատոն բռնեց ձեռքս։

— Չկրակես, դեն գցիր խաղալիքդ։ Երեխայիս վտանգի մի՛ ենթարկիր։

Արջը մոտենում էր Օլչանին։ Ինչպես երևում էր, տղան չէր նկատել սարսափելի գազանին։ Իմ սիրտը դող ընկավ։ Մի՞թե իմ աչքի առաջ գազանը պիտի հոշոտի պատանուն։ Տատոն, որ ուշադրությամբ հետևում էր իմ շարժումներին, վերցրեց հրացանս, տնտղեց և այն վայրկյանին, երբ արջը հասել էր Օլչանին ու պատրաստվում էր թռչել երեխայի վրա, Տատոն դեն շպրտեց հրացանս ու ամուր բռնեց իմ ուսից։ Ես ակամայից գոչեցի՝ «Օլչան, Օլչան» ու մի պահ աչքերս փակեցի։ Բայց դա միայն մի ակնթարթ էր։ Հանկարծ լսեցի Օլչանի գիլ ճիչը և տեսա, թե ինչպես տասնվեցամյա պատանին դուրս պրծավ ուղղակի արջի թաթերի միջից ու շուռ եկավ։ Արջը կանգնեց հետին ոտքերի վրա ու ահռելի գոռոցով վրա հասավ։ Ես անմիջապես չնկատեցի, թե ինչպես Օլչանը ձեռքի երկճյուղանի փայտը դեմ տվեց արջի վզին։ Արջի վիզը մնաց երկու ճյուղերի արանքում, իսկ փայտի սուր ծայրը գազանի ծանրությունից խրվեց հողի մեջ։ Այդ պահին Օլչանը կատվի ճկունությամբ շուռ եկավ ու մտավ արջի տակ և որսորդական դանակը մինչև բռնակը խրեց գազանի փորը։ Գազանը, որ փայտն արդեն դուրս էր քաշել հողից, զարհուրելի մռնչյուն արձակեց։ Նա ահագին թաթերով դուրս թափված աղիքները գրկած, սկսեց պտտվել իր տեղում և իր ոռնոցով դղրդացնել օդը։ Օլչանը հեռացավ արջի մոտից։ Արջը գետին գլորվեց և շունչը փչեց։ Երբ գազանն ընկավ, ես շուռ եկա դեպի Տատոն։ Տատոն շատ հանգիստ էր։ Նրա դեմքին շուտով նկատվեց գոհունակության ու հպարտության արտահայտություն։ Նա նայեց ինձ, ժպտաց ու ասաց.

— Դու ճնճղուկներ լավ կորսաս։ Սիրտդ ոնց որ նապաստակի պոչ լինի...

Ես չգիտեի վիրավորվեմ, թե ժպտամ։ Նա նկատեց իմ հուզմունքը, ձեռքս բռնեց ու ասաց.

— Հուլիս ամիսն է։ Հապալասի և ցախկեռասի պտուղները հասած են, գետերը լի են ձկներով, տայգան հարուստ է գազաններով ու կենդանիներով։ Արջի համար կեր



Օլչանը երկճյուղանի փայտը դեմ տվեց արջի վզին։

ճարելը հեշտ է։ Եթե արջը կուշտ է, նշանակում է հանգիստ է, բնավորությունը մեղմ է, և նույնիսկ կատակներ է անում։ Այդ ժամանակ նա մարդու վրա չի հարձակվի։ Բայց հենց որ մարդը վիրավորում է արջին, արջը կատաղում է, վրա է հասնում և մինչև արնաքամ լինելը շատ անգամ ջարդ ու փշուր է անում մարդուն։ Երբ որսորդը կրակում է

*հրացանից, շատ քիչ է պատահում, որ մի գնդակով գետին տապալի արջին։ Մեծ մասամբ վիրավորում է. իսկ վիրավոր արջը շատ վտանգավոր է։*

*Զուկչին մի պահ լռեց։ Հանգիստ ու անխռով քայլերով մեզ էր մոտենում Օլչանը։ Նա ձեռքի կարմիր լաթով սրբեց որսորդական դանակը և պատյանը դրեց։ Տատոն նայեց որդուն ու ասաց.*

*— Ապրես, որդի՛ս։*

*Երբ մենք վերադառնում էինք յուրտը, ես Տատոյին հարցրի.*

*— Ուրեմն արջերի վրա հրացանով գնալը միտք չունի՞։*

*— Ինչու չէ,— պատասխանեց Տատոն,— կարելի է. բայց ավելի լավ է աշնանը, երբ արդեն նա քաշվում է իր որջը ձմեռելու համար։ Այդ ժամանակ արջը շատ բարկացած է լինում, կատակներ չի սիրում, և ավելի լավ է կրակել նրա վրա թաքստոցից։*

*Տատոն մոտ կանչեց Օլչանին ինչ-որ բան ասաց, հետո դառնալով ինձ ավելացրեց.*

*— Սարսափելի է այն, ինչից վախենում ես, այն, ինչ չգիտես. եթե գիտես ու չես վախենում, սարսափելին հաճելի է դառնում ու գրավիչ։*




## ՊԱՏԱՆԻ ՄՈԴԵԼԻՍՏՆԵՐԸ

Ընդարձակ ու լուսավոր սենյակի պատերի տակ շարված սեղանները ծանրաբեռնված են զանազան գործիքներով, թղթերով, նախագծերով: Պատերին կախված են տարբեր մեծության ու ձևի մոդելներ: Սեղանների առաջ աշխատում են աշակերտները: Մեկը ճղկում է բամբուկի նուրբ ու ողորկ շյուղը, մյուսը սոսինձով պատում է ծխախոտի թափանցիկ թուղթը, երրորդը չափում է ինքնաթիռի կիսավարտ մոդելը...

Դրանք Լենինականի պիոներների տան ավիոմոդելիստների խմբակի անդամներն են: Նրանցից մի քանիսը ռեսպուբլիկական մրցումներում նվաճել են չեմպիոնի կոչում:

— Մոդելիստների խմբակում,— ասում է խմբակի ղեկավար Անուշավան Պետրոսյանը,— մոտավորապես 100 պիոներ կա: Նրանք բաժանված են չորս ենթախմբի: Ամեն մի ենթախումբ ունի իր աշխատանքի օրերն ու ժամերը, մրցում է մյուսի հետ:

Այնուհետև նա մեզ ծանոթացնում է աչքի ընկնող մոդելիստների ու նրանց աշխատանքների հետ:

Ահա մեխանիկական շարժիչներ ունեցող մոդելների գծով ռեսպուբլիկայի չեմպիոն, Հ. Հակոբյանի անվան դպրոցի ութերորդ դասարանի աշակերտ Ռոմիկ Գևորգյանը: Նրա պատրաստած ավիոմոդելը ռեսպուբլիկական մրցումներում բարձրացել է մինչև 2300 մետր և անցել 11 կիլոմետր տարածություն. օդում մնացել է 42 րոպե:

— Վերջերս,— ասում է Ռոմիկը իմ պատրաստած նոր ավիոմոդելը լավ արդյունք ցույց չտվեց: Երբ ես դիմեցի խմբակի ղեկավար ընկեր Պետրոսյանին և միասին կատարեցինք նոր հաշվումներ, պարզվեց, որ ճիշտ չեմ որոշել մոդելի ծանրության կենտրոնը:

Մենք դիտում ենք նաև պլաներների գծով 1953 թվականի ռեսպուբլիկական մրցումներում առաջնություն շահած Անդրերկաթուղու 40-րդ դպրոցի ութերորդ դասարանի աշակերտ Թոմիկ Հակոբյանի աշխատանքը: Թոմիկի պատրաստած պլաները հասավ 800 մետր բարձրության, օդում մնաց 18 րոպե և անցավ 14 կիլոմետր տարածություն:

Հիանալի տպավորություն են թողնում նաև Օրջոնիկիձեի անվան դպրոցի իններորդ դասարանի աշակերտ Ռուբիկ Գրիգորյանի և Հ. Հակոբյանի անվան դպրոցի վեցերորդ դասարանի աշակերտ Հարություն Ցաղուրջյանի պատրաստած մոդելները: Թե Ռուբիկը և թե Հարությունը բազմաթիվ անգամ մասնակցել են ռեսպուբլիկական ու քաղաքային մրցումներին և նույնպես առաջնություն շահել:

Լավ ավիոմոդելներ պատրաստել են նաև տասնյակ ուրիշ պիոներներ: Խմբակի ղեկավարը ծանոթացնում է իրենց աշխատանքային պլանի հետ, պատմում, թե նրանք ինչ են անելու: Պատանի մոդելիստները շարունակում են իրենց աշխատանքը, իսկ մենք դուրս ենք գալիս աշխատասենյակից՝ համոզված, որ այդ պատանիներից շատերը պիտանի մարդիկ կդառնան սովետական ավիացիայի համար:

Ք. ԳՐԻԳՈՐՅԱՆ

# ՄԵԾ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՐԾԱՆՔԸ

Լ. ԱՍՄԱՐՅԱՆ
(Ֆիլոլոգիական գիտությունների թեկնածու)

Ձմեռային ցուրտ երեկո է։ Դրսում սկսում է խտանալ խավարը։ Գիմնազիայի առաջին դասարանի մի աշակերտ սենյակում նստած սերտում է դասերը։ Այդ պահին բացվում է դուռը և ներս է մտնում մուշտակի մեջ կծկված տանտերը՝ Պավել Եգորովիչը։

— Ես գնում եմ գործով. իսկ դու, Անտոշա՛, գնա խանութ և լավ նայիր։

— Խանութում ցուրտ է,— առարկում է տղան,— ես էլ այնպես սառել եմ. հենց նոր եկա գիմնազիայից։

— Ոչի՛նչ... լավ հագնվիր՝ ցուրտ չի լինի։

— Վաղը շատ դասեր ունեմ...

— Դասերը կսովորես խանութում... Գնա, շո՛ւտ... մի՛ դանդաղիր...

Եվ տղան հնազանդվեց հոր կամքին։

Անտոշայի պապը եղել էր ճորտ. ազատվել էր փրկագնով։ Հայրը՝ Պավել Եգորովիչը հարազատ Տագանրոգում հիմնել էր մի փոքր խանութ։ Ծանր էր երեխաների աշխատանքը։ Հոր խանութը բացվում էր առավոտյան ժամը հինգին և փակվում ուշ երեկոյան՝ տասնըմեկին։ Անտոշան և՛ դասի էր գնում, և՛ օգնում էր հորը՝ խանութում։ Հայրն ամեն մի չնչին առիթով պատժում էր տղային։

Երբ Անտոշան մտերմացավ իր դասընկերներից մեկի հետ, նրա առաջին հարցն այս էր.

— Քեզ հաճա՞խ են ծեծում տանը։

— Ինձ երբեք չեն ծեծում,— պատասխանեց ընկերը։

Անտոշան զարմացած էր։

Անտոշան ապագա ռուս մեծ գրող Անտոն Պավլովիչ Չեխովն էր։ Հետագայում նա այդ տարիների մասին ցավով է հիշում. «Իմ մանկության մեջ մանկություն չկա»։

Անտոն Չեխովը ոչ միայն իր հոր դաժանությունն էր զգում, այլև գիմնազիայի, որը կատարյալ մի բանտ էր։ Տարիներ անց, 1886 թվականին, Չեխովը գրում էր. «Ես մինչև այժմ էլ, երբեմն դեռ երազում, տեսնում եմ գիմնազիան, չսովորած դասը և վախը, որ ուսուցիչը կկանչի»։

Չնայած ծանր պայմաններին, Չեխովը չհուսահատվեց։ Ընդհակառակը. նա ատելությամբ էր լցվում կեղծիքի ու բռնության դեմ և կարողացավ կյանքի պայքարում



Անտոն Պավլովիչ Չեխով

հաղթող դուրս գալ։ Նա սկսեց գրել։ Գիմնազիայում ձեռագիր ամսագիր էր լույս տեսնում։ Ահա այդտեղ էր, որ տասներեք տարեկան Չեխովը ոտանավոր գրեց դպրոցի դաժան տեսուչի դեմ...

Այնպես պատահեց, որ Չեխովի հայրը՝ Պավել Եգորովիչը տեղափոխվեց Մոսկվա։ Նրանց ընտանիքը ընկավ պարտքերի տակ, սնանկացավ։ Նրանք կորցրին Տագանրոգի տունը։ Չեխովը միանգամից նայեց դաժան աղքատության դեմքին։

— Մնաս բարով, հին կյանք,— այսպես էր բաժանվում Չեխովն անցյալից։

Նոր կյանքը վշտով, վիրավորանքով, աղքատությամբ էր սկսվում. բայց չէ՞ որ

դա ազատություն էր։ Իսկ Չեխովն ազատություն շատ էր սիրում։ Նա մասնավոր դասեր էր տալիս. նույնիսկ սկսեց օգնել ընտանիքին։ Այդպես նա ավարտեց գիմնազիան, փոխադրվեց Մոսկվա, այնտեղ համալսարան ընդունվեց...

Անցյալ դարի ութսունական թվականները, երբ որպես գրող հանդես եկավ Չեխովը, խուլ ու խավար տարիներ էին։ Մարդիկ վախենում էին բարձր խոսել, իրար հետ ծանոթանալ, նամակներ գրել, գրքեր կարդալ։ Ցարը ճնշում էր ամեն մի ազատ միտք։ Մոսկվայում և Պետերբուրգում այդ ժամանակ սնկի նման բուսնում էին անմեղ, դատարկ անեկդոտներով, մանր, մի քանի տողանոց զվարճալի պատմվածքներով լեցուն «Օսկոլկի», «Բուդիլնիկ», «Ստրեկոզա» և այլ ամսագրերը։ Ահա այդ ամսագրերին հատկապես «Օսկոլկիին» սկսեց մասնակցել Չեխովը՝ Անտոշա Չեխոնտե զվարճալի կեղծանունով։ Նա ինքն էլ արտաքուստ գրում էր զվարճալի, գրավիչ, մանր պատմվածքներ։ Քանի գրում էր, այնքան աճում էր որպես գրող։

1883—85 թվերին իրար հետևից լույս տեսան՝ «Հաստը և բարակը», «Չինովնիկի մահը», «Ունտեր Պրիշիբեևը», «Չարամիտը», «Ձիու ազգանունը», «Քամելեոնը» և այլ պատմվածքներ։ Դրանք հասուն գործեր էին, որոնցից մեծ մասի մեջ Չեխովն սպանիչ ծաղրով էր ծաղրում բթամիտ, վայրենի, շողոքորթ մարդկանց և մեծ վարպետությամբ ստեղծում նրանց տիպերը։

Չեխովի մեծությունն այն էր, որ նա առաջին անգամ ռուս գրականության մեջ տեղ տվեց փոքրիկ, սովորական մարդկանց, հատկապես ռուս ինտելիգենտներին՝ բժիշկներին, գիտնականներին, գրողներին, դերասաններին։ Նա կարողացավ կարճ պատմըվածքն այնքան լավ գրել, որ վեպի արժեք ունենա։ Բայց նա սկզբում այդպիսի կարծիք չուներ իր գրածների մասին և իրեն միայն համարում էր «Բժիշկ Չեխով»։

1886 թվականին Չեխովի կյանքում ուրախալի մի դեպք պատահեց։ Պետերբուրգից ռուս հայտնի գրող Գրիգորովիչը նամակ գրեց նրան։ Այդ նամակում նա ասում էր, որ Չեխովը տաղանդ է և նրան մեծ ապագա էր գուշակում։ Նամակը նոր եռանդ և ոգևորություն բերեց գրողին։

Ավելի լայնացավ Չեխովի տեսադաշտը։ Դրան օգնեց այն, որ համալսարանն ավարտելուց հետո նա տեղափոխվեց Մոսկվայի մոտ, Վոսկրեսենսկ (Իստրա)։ Մոտիկ մի գյուղում՝ Բաբկինոյում, իսկ հետո՝ Մելիխովոյում բժշկի պաշտոն էր վարում։ Նա հաճախ էր դուրս գալիս, շրջում դաշտերում, ուսումնասիրում հարազատ ռուսական բնությունը։ Այնտեղ էլ նա ծանոթացավ գյուղական կյանքին։ Աշնանը և ձմռանն էլ լինում էր Պետերբուրգում։

Ութսունական թվականներին Չեխովն ապրում էր Սադովո-Կուդրինսկում։ Այդ ժամանակ է նա գրում իր հայտնի «Տափաստանը»։ Դա բնության, ուրախության, հայրենիքի գովքն է։ Բայց Չեխովին, կյանքի երգչին, իրականությունն անտանելի էր թվում։ Նա ուզում էր գործել, ցույց տալ, թե ինչ պետք է անել հարազատ ժողովրդի համար։ Այդ էր պատճառը, որ նա հանկարծ որոշեց գնալ հեռու՝ Սախալին կղզին, որը աքսորավայր էր։ Նա պետք է հաղթահարեր ճանապարհի դժվարությունները, հազարավոր վերստեր անցներ կառքով։ Ամբողջ ճանապարհին զգալու էր կառքի ցնցումը, տեսնելու էր սիբիրյան գետերի հորդումը։ Նա գիտեր այդ ամենի մասին, բայց գնաց սխրագործության։

Նա տեսավ Սիբիրը. և ի՜նչ հիացմունքով էր գրում այնտեղի մարդկանց մասին. «Աստված իմ, ինչքա՜ն հարուստ է Ռուսաստանը լավ մարդկանցով»։

Ապա եղավ Սախալինում, զրույցներ ունեցավ տաժանակիրների հետ։ Երբ այնտեղից վերադարձավ գրեց «Սախալին կղզին» գիրքը, ուր տրված էր տաժանակիրների կյանքի մռայլ պատկերները։ Դա փաստորեն բողոք էր ցարական կարգերի դեմ։

Ընթերցողների վրա ցնցող տպավորություն թողեց նրա մի ուրիշ պատմվածքը՝ «Պալատ № 6-ը»։

Չեխովը «Պալատ № 6» ասելով հասկանում էր ցարական ինքնակալությունը, որը խեղդում և մեռցնում էր ամեն ինչ։ Այդ պատմվածքը Վ. Ի. Լենինը շատ էր հավանել։ Իսկ ինչքա՜ն լավ է նկարագրել Չեխովը

վախկոտ, ամառ, ձմեռ վերարկուով, կրրկնակոշիկներով և հովանոցով շրջող պատյանավոր մարդուն՝ հունարենի ուսուցիչ Բելիկովին, որն ամեն մի քայլն անելիս, մտածում է, թե հանկարծ որևէ բան չպատահի՞... («Պատյանավոր մարդը»)։ Բելիկովի նման հնացած, կյանքից կտրված մարդիկ փաստորեն պետության հլու ստրուկներն էին։ Չեխովը որպես Բելիկովի նախատիպ ընտրել է գիմնազիայի տեսուչ Դյակոնովին։

Կյանքն ամենուրեք ծանր էր։ Մի՞թե այդպես չէր գյուղում։ «Ձորակում» պատմվածքում Չեխովը նկարագրում է ռուս գյուղացու տանջալից կյանքը։ Մարդ մտածում է, որ այդպես ապրել այլևս չի կարելի, պետք է հիմքից փոխել կյանքը։

Չեխովն առանձնապես շատ էր սիրում երեխաներին։ Գրողներից շատ քչերն են այնքա՛ն գեղեցիկ, այնքան հրաշալի պատմվածքներ գրել մանուկների մասին։ Նա լավ էր ուսումնասիրել մանկական աշխարհը։ Շատ բան էլ հիշում ու մտաբերում էր իր մանկությունից. տեսել էր ռուս երեխաներին, հեռավոր, մոռացված Սախալինում, մեծ քաղաքների փողոցներում։ Տեսել էր ճնշված, խղճալի երեխաներին, որոնք ապրելու, մի կտոր հացի համար թողել էին հայրական տունը և տանջվում էին հարուստների մոտ։ Ինչքա՛ն սրտառուչ է գրված «Քնել է ուզում» պատմվածքը։ Ահա փոքրիկ դայակը՝ Վարկան։ Նա ծառայում է ենթավարպետի տանը։ Նա շատ է ուզում քնել, բայց իրավունք չունի. պետք է ամբողջ գիշերը հսկի ենթավարպետի երեխային։ Վարկան հանկարծ ննջում է. տանտերը խփում է նրա վզակոթին և նա նորից արթնում է։ Եվ այսպես անվերջ։ Վարկան կարծում է, թե իր թշնամին երեխան է և խեղդում է երեխային, որ կարողանա գիշերը քնել։

Իսկ ո՞վ չի հիշում ինը տարեկան Վանկա Ժուկովին, փոքրիկ գյուղական որբ տղային։ Նա գնացել է քաղաք կոշկակարի մոտ արհեստ սովորելու։ Քաղաքում անտանելի է նրա կյանքը։ Նրան ծեծում են, սոված թողնում։ Շնից ավելի վատ է ապրում նա։ Գյուղում Վանկան թողել է իր միակ սիրելուն՝ պապիկին։ Եվ նա գրում է իր հայտնի նամակը՝ «Մեր գյուղը պապիս» հասցեով։ Վանկան գրում է, համոզված, թե պապը կգա, կտանի իրեն, կփրկի։ Եվ այդ երազներով էլ քնում է։

Չեխովը շատ լավ է նկարագրել գիմնազիստներ Վոլոդյային և Չեչևիցինին, որոնք աշխարհագրությունից իմանալով Ամերիկայի մասին, ուզում են փախչել Կալիֆորնիա, հաղթել ծովահեններին, ոսկի ձեռք բերել, խմել ջին։ Իսկ փախստական Պաշկա՛ն, իսկ Գրիշկա՛ն։



Այն տունը, որտեղ ծնվել է Ա. Պ. Չեխովը։

Չեխովը կարողանում է մանկական հոգու ամբողջ ուրախությունը և տխրությունը հանճարեղ կերպով հասցնել ընթերցողին։ Իսկ ինչքա՛ն լավ է նա ուսումնասիրել երեխաների բարեկամներին՝ սպիտակ ճակատով շնիկին կամ Կաշտանկային։

Չեխովը խոշոր դրամատուրգ է։ Նրա սերը դեպի թատրոնը սկսվել էր դեռ մանկուց։ Նա նույնիսկ խաղում էր պիեսներում։ Տանը Չեխով եղբայրները կազմակերպեցին Գոգոլի «Ռևիզոր» կոմեդիայի ներկայացումը։ Անտոն Պավլովիչն էլ էր մասնակցում ներկայացմանը։ Հայտնի է, որ նա լավ էր գրիմավորվում։ Մի անգամ գրիմավորված ներկայացավ իր հորեղբորը՝ Միտրոֆան Եգորովիչին։ Վերջինս կարծեց, թե նա մուրացկան է և ողորմություն տվեց։ Գիմնազիայի աշակերտներին չէին թույլատրում թատրոն հաճախել։ Բայց Չեխովը շորերը փոխում էր ու գնում, ետ չէր մնում ներկայացումներ տեսնելուց։

Չեխովի մեզ հայտնի առաջին ստեղծագործությունն էլ գրված էր թատրոնի հա-

*մար։ Մինչև 1895 թվականը նա թատրոնի համար գրել էր. բայց նրա առաջին հռչակավոր պիեսը՝ «Ջայկան» էր։ Հետո նա ստեղծում է նաև իր մյուս հայտնի պիեսները՝ «Քեռի Վանյան», «Երեք քույրը», «Բալենու այգին»։ Վերջին պիեսում Չեխովը հրաշալի է պատկերում հայրենիքի ապագան, որը դառնալու է մի աննման ծաղկուն այգի։ Այդ այգին պետք է տնկի նոր սերունդը։*

*1898 թվականին ստեղծվեց Մոսկվայի «Գեղարվեստական հանրամատչելի» թատրոնը։ Այդ թատրոնը արվեստը մոտեցնում էր ժողովրդին։ Այդտեղ է, որ փայլեց Չեխովը։ Դեկտեմբերին խաղացվեց «Ջայկան»։ Պիեսը մեծ հաջողություն ունեցավ։ Դրան հաջորդեցին մյուս պիեսների հաջողությունները…*

*Չեխովը շատ մտերիմներ ուներ։ Նա դեռ Բաբկինոյում ծանոթացել էր ռուս նշանավոր նկարիչ Լեվիտանի հետ։ Կյանքի վերջին տարիներին էլ շատ մտերիմ էր ռուս մեծ գրողներ Լև Տոլստոյի և Մաքսիմ Գորկու հետ։*

*Նա շատ ուշադիր էր Գորկու նկատմամբ և նրա մեջ տեսնում էր մեծ գրողին։ Այնքան սերտ էր այդ բարեկամությունը, որ երբ Չեխովին և մյուսներին ընտրեցին պատվավոր ակադեմիկոսներ, իսկ Գորկուն չընտրեցին, Չեխովը և հայտնի գրող Կորոլենկոն, իբրև բողոք, հրաժարվեցին ակադեմիկոսի պատվավոր տիտղոսից։*

*Չեխովը ժամանակի առաջավոր մարդկանցից մեկն էր։ Նա հավատում էր ռուս ժողովրդի ուժին և նրա փայլուն ապագային։ Նա ապրեց մինչև ռուսական առաջին ռևոլյուցիայի նախօրյակը և մեռավ հաղթանակի հավատը սրտում։ 1904 թվականին հիվանդ Չեխովին տեղափոխեցին արտասահման՝ Բադենվեյլեր։ Ամառային մի գիշեր նա ընդմիշտ փակեց աչքերը։ Նրան փոխադրեցին Մոսկվա և թաղեցին Նովոդեվիչի վանքում, իր հոր կողքին։*

*Անտոն Պավլովիչ Չեխովի երկերը թանկ են ոչ միայն ռուս, այլև բոլոր ժողովուրդների համար։ Ահա թե ինչու, նրա մահվանից հիսուն տարի անց, ժողովուրդները խորին հարգանքով են նշում հանճարեղ գրողի անմահ հիշատակը։*




*ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ*

*Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ*

Երկու որբ, փոքրիկ եղբայր են լինում,
Երկուսն էլ կապույտ-կապույտ աչքերով։
Մի օր եղբայրները անտառ են գնում
Քաղցր մարելու վայրի մրգերով։
Շատ են ման գալիս անտառում, բե՛ ք՛իչ,
Իջնում է, մութը ծածկում է ճամփան,
Անհետանում է և երկինքը ջինջ,
Մրին անտառից էլ ինչպե՞ս դուրս գան…
Եվ անօգնական, անհույս, գլխահակ,
Ցնցոտիներում ցրտից կծկված,
Ժայռից գլորված մի մեծ քարի տակ
Նստում են որբերն ուս-ուսի տված։

— Հրա՛յր եղբայր, մոտիկ նստիր,
Ես դողում եմ, ես մրսում,
Հրա՛յր եղբայր, վրաս ծածկիր,
Արդեն քնել եմ ուզում.
Մի քիչ քնեմ, քիչ տաքանամ.
Երբ որ հաղթի քունը քեզ,
Ինձ ձայն կտաս, ես կարթնանամ,
Հետո էլ դու կքնես։
— Քնիր, Նորա՛յր, իմ եղբայրի՛կ,
Շատ կա մինչև լուսաբաց.
Դու չես կարող, շատ ես փոքրիկ,
Ես կնայեմ քեզ նստած...

Ու քնում է փոքրիկն անուշ,
Ցրտին, չորին անտարբեր։
Գիշեր է խոր, գիշեր է ուշ
Փորձանքներով ծանրաբեռ։
Լուռ է շուրջը, շշյուն չկա,
Ո՛չ մի շարժում, ո՛չ մի կանչ,
Քուն է մտել անտառն հսկա
Լեռան գրկում լայնալանջ։
Մեծ եղբայրը քնի կարոտ
Աչքերն հառած խավարին,
Նայում է լուռ ու երազկոտ
Կայծկլտացող աստղերին...

Նայում է լուռ, ձայն չի տալիս
Եղբայրիկին աչքի լույս.
Լուսաստղիկն էլ դուրս չի գալիս,
Չի ներշնչում լույսի հույս։
Գիշերվա պես մռայլամած,
Խավարի պես ահավոր,
Քունն իջնում է փակում կամաց
Եվ աչքերը մեծ եղբոր...
Սոված մի գայլ հեռու-հեռվից
Եղբայրներին նկատում,
Մոտենում է, միանգամից
Երկուսին էլ հոշոտում։

Մեր սարերում երկնյուղանի
Մի լավ ծաղիկ է բուսնում,
Մի ալ ծաղիկ երկգլխանի,
Որ մինչ աշուն է հասնում։
Բայց չեն տեսնում իրար երբեք
Գլխիկներն այդ խոնարհված,
Թեև անվերջ՝ գիշեր, ցերեկ
Միշտ կանգնած են դեմ-դիմաց։
Ամեն անգամ, երբ բացում է
Մեկն իր աչքը կապուտակ,
Մյուսն իսկույն շտապում է՝
Քուն է մտնում աչքը փակ։

Ասում են թե դրանք անտուն
Եղբայրներն են այն փոքրիկ,
Իրար այդպես հսկում արթուն,
Ծաղկի տեսքով գեղեցիկ։
Մի աչքը փակ,
Մի աչքը բաց,
Ծաղիկ է այդ մի չքեղ,
Ախպրածաղիկ,
Որ բուսնում է
Քարերի մեջ ամեն տեղ։

# ՈՍԿԱՆԻ ՆԱՄԱԿՆԵՐԸ

*Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ*

*Նկ. Գ. ՅԱՐԱԼՅԱՆԻ*

*Մարտին ջան. իսկի չեմ էլ մտածում, որ չփոխադրվեցի։ Հայրիկս ինձ Ստեփանավան ուղարկեց քրոջս մոտ, հիմա այստեղ եմ ապրում, դպրոց եմ գնում, էլի վեցերորդ դասարանում եմ։*

*Ա՛յ թե հրաշալի տեղ է Ստեփանավանը, Մարտին։ Այստեղ մի անտառոտ սար կա՝ անունը «Արջասար». ամեն օր տղաներով գնում ենք նապաստակ բռնելու, բայց դեռ ոչ մեկը չենք բռնել։*

*Մարտին ջան, քույրս առավոտից գնում է աշխատանքի, տանը մնում եմ ես. մինչև ժամը 10-ը քնում եմ, հետո էլ դպրոց եմ գնում։ Ճիշտ է, դասերից ուշանում եմ, բայց մեկ է, դպրոցում ինչ-որ անցնում են ես արդեն գիտեմ. չէ՞ որ ես երկրորդ տարեցի եմ։*

*Հա, մոռացա գրեմ. երեկոները վազվզում ենք, թռչում, քար նետում ձորը։ Թե իմա-*

նաս ի՞նչ աղավնիներ եմ ձեռք գցել, երկու հատ են, երկուսն էլ սպիտակ...

Մարտին ջան, ցտեսություն, տղաները կանչում են, գնում եմ...

Քո ընկեր Ոսկան։

Մարտին ջան. այսօր ընկեր Պապայանն ինձ դաս հարցրեց։ Գիտես, տղաները նրան «Ուրեմն» են ասում։ Երբ որ դաս ես պատասխանում, ճիշտ եղավ, ասում է՝ «ապրես», իսկ եթե սխալ եղավ, մեկ էլ տեսար հարցրեց՝ «Ուրե՞մն». դե արի ու հասկացիր, թե ի՞նչ է հարցնում։

Ես Սիմոնին ասել էի, որ ինձ հուշի։ Սկզբում լավ էր, Սիմոնը կամաց-կամաց հուշում էր, ես էլ կրկնում էի. մեկ էլ... լռեց. ես նրան եմ նայում, աչքերով ասում եմ, որ հուշի, իսկ այդ դավաճանը ժպտում է ու լեզուն հանում։ Ճար չկար, լռեցի։

— Ուրե՞մն,—հարցրեց ընկեր Պապայանը։



Իսկ ընդհանուր առմամբ լավ է...

— Եվ այլն,— պատասխանեցի ես։

Տղաները ծիծաղեցին։ Բավական չի, որ Պապայանն ինձ «2» նշանակեց, դեռ անունս էլ «Եվ այլն» մնաց։ «Եվ այլնի» համար ես դեռ ցույց կտամ այդ Սիմոնին։

Մարտին ջան, հիմա աղավնիներս չորս հատ են, երկուսն սպիտակ, երկուսը՝ մոխրագույն։

Մարտին ջան, երեկ կռիվ արեցինք։ Մեկը կա, իրեն շատ է երևակայում, ես նրան ծեծեցի։

Բարևներով քո ընկեր Ոսկան։

---

Մարտին ջան. Պապայանը, չգիտեմ թե ինչո՞ւ է հետս ընկել. ես դրա համար փիլիսոփա՞ եմ, ի՞նչ եմ. ամեն օր դաս է հարցնում։ Երեկ էլ ծնող կանչեց.

— Ծնողիդ կբերես,— ասաց։

— Որտեղի՞ց,— հարցրի։

Բարկացավ։

— Տանից՝ որտեղից. հիմար հարցեր մի՛ տա։

— Հայրս Երևանում է,— ասացի։

— Ուրե՞մն։

Որ ասաց «ուրեմն», ծիծաղս եկավ, ծիծաղեցի։ Նա ավելի բարկացավ։

— Ո՞ւմ մոտ ապրում ես, նրան էլ բեր։

Այ հա՜յ, ես իսկի քրոջս կասեմ. առանց այդ էլ շատ է խոսում աղավնիներիս համար։

Մարտին ջան, որ իմանաս, թե ինչքան լավն են աղավնիներս. հիմա վեց հատ են, վեց հատ։ Տղաները նախանձից ինձ ձեռք են առնում։

— Վեց աղավնի ունես, վեց հատ էլ «2»,— ասում են։

Դեռ տարվա կեսն էլ չկա, տարվա վերջին կտեսնեն, թե ի՞նչ եմ անելու։

Մարտին ջան, այսօր ձյուն եկավ, անհամբեր սպասում եմ, թե երբ ենք սահնակ ու չմուշկ քշելու։ Մարտին ջան, այն տղան, որին ես ծեծել էի (անունը Պողո՛ս է), երեկ ընկերներին հավաքեց ու ինձ մի քիչ ծեծեց.ափսոս, որ ես մենակ էի, բայց ոչինչ, Մարտին ջան, դեռ այդ փսլնքոտն իր պատիժը կստանա։

Մարտին ջան, ամեն երեկո կինո եմ գնում։

Քո ընկեր Ոսկան։

---

Մարտին ջան. բոլորի հետ կռվեցի։ Երևակայում ես, հարցս դրել, քննում են։ Մեկը վեր կացավ թե.



— ...հիմա վեց հատ են, վեց հատ:

— Չես պարապում. ամբողջ օրը թրև ես գալիս ու կռիվներ սարքում, իսկ քո փոխարեն մենք ենք կարմրում: Պիոներական ջոկատը պահանջում է...

Ես խսկի չլսեցի էլ, թե նրանք այնտեղ ինչ էին պահանջում, դուրս եկա: Իսկ նրանք պահանջելու իրավունք ունե՞ն, ասա, իրավունք ունե՞ն: Կարծես թե դրանց գաղութն եմ, որ ինձ ճնշում են:

Մի գերազանցիկ ունենք Ռազմիկ անունով, շատ է երևակայում, երեկ մոտեցել է թե.

— Եկ միասին պարապենք:

— Ինչո՞ւ,— ասում եմ:

— Դե ինչ-որ ես չեմ իմանա՝ դու կասես, ինչ որ դու չես իմանա՝ ես կասեմ:

— Պա՛հ, դու ի՞նչ ես, որ ինձ բան սովորեցնես,— ասում եմ:

Նեղացավ:

— Ես,— ասում է,— ջոկատի հանձնարարությամբ եմ եկել:

— Որտեղից եկել ես, այնտեղ էլ գնա:

Բարկացավ՝ գնաց:

Առհասարակ ձանձրացնում են, մեկ ջոկատավարն է գալիս, մեկ՝ դասղեկը. կարծես թե բան ու գործ չունեն:

Իսկ ընդհանուր առմամբ լավ է: Մի քանի օր առաջ ընկա, քիթս քերծվեց, տղաները ծաղրում են. իբր թե կռիվ եմ արել, խփել են:

Քո ընկեր Ոսկան:

Մարտին ջան. երեկ ուսմասվարն ասաց, թե ինձ չեն թույլատրում քննություններին մասնակցել. իբր թե չորս առարկայից «2» ունեմ: Ես գիտեմ, թե դա ո՞ւմ սարքած գործն է... Բա եկող տարի էլի գնամ վեցերորդ նստե՞մ:

Ուրեմն՝ քո դժբախտ ընկեր Ոսկան:

***

Երբ Մարտինը կարդում էր ընկերոջ վերջին նամակը, թղթի վրա ինչ-որ բծեր նկատեց: Մարտինը հասկացավ, որ Ոսկանը լաց էր եղել. այդ նրա արցունքի հետքերն էին. բայց դե Մարտինն ի՞նչ կարող էր անել:

## ԹԻԹԵՌՆԻԿԸ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Մի առավոտ գեղեցիկ
Զբոսանքի գնացինք.
Թիթեռնիկն այս անդադար
Թռչկոտում էր վեր ու վար:
Հենց որ տեսավ խաժակին,
Թռավ ծաղկի բաժակից.
Վազ տվեցի դեպի նա,
Սայթաքեցի վայր ընկա:

Մեկ էլ հանկարծ բարձրացավ
Առվի մյուս ափն անցավ.
Այս անգամ էլ, գիտե՞ս ինչ,
Ընկա ջուրը... է՜հ, ոչի՜նչ...
Սա թևերն իր թափ տվեց
Մասրենու մեջ թաքնվեց.
Ձեռքս կամաց պարզեցի
Թիթեռնիկին բռնեցի:

Ահա և նա, խնդրեմ տե՛ս.
Տուփի մեջ եմ դրել ես.
Ձեռք չտաս, հա՛, քնած չի,
Թե չէ հանկարծ կթռչի...

## ՊԱՐԾԵՆԿՈՏ ՃՊՈՒՌԸ

Գ. ԱՂԱՋԱՆՅԱՆ

Թևը հատած մի ճպուռ,
Ինքը՝ պստիկ, ոտքը՝ ծուռ,
Ընկավ ջուրը գետակի
Ու քիչ մնաց՝ խորտակվի:
Նա «լող» տվեց առանց թև,
Ուզեց ջրից ազատվել,
Բայց ճպուռից ի՞նչ լողորդ,
Ինքը՝ ճպուռ, ջուրը՝ հորդ...
Ալիքների գիրկն ընկած,
Թպրտում էր. և հանկարծ,
Նայեց, տեսավ գետի մեջ,
Լող է տալիս մի գոմեշ:
Ծրռաց, հազիվ բափ առավ,
Կպավ պոչին՝ափ ելավ,
Ապա ցատկեց պոչից ցած,
Իրեն գովեց և ասաց.
— Ինձ ինչ կանի գետը հորդ,
Ե՛վ թռչուն եմ, և՛ լողորդ.



Նկ. Կ. ԱՆՏՈՆՅԱՆԻ

Մտա, վստահ իմ ուժին,
Որ ազատեմ գոմեշին:

## ԳՈԲԻ ԱՆԱՊԱՏՈՒՄ

Կ. ԱՎԵՏԻՍՅԱՆ
(Աշխարհագրական գիտությունների թեկնածու)

Գոբին զբաղեցնում է Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հարավային մասը և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հյուսիս-արևմտյան հատվածը: Դա աշխարհի ամենամեծ անապատներից մեկն է: Ամառը Գոբիում տաք է, իսկ ձմեռը՝ ցուրտ, ինչպես Սիբիրում: Անապատի երկարությունը հյուսիսից հարավ 1200 կիլոմետր է: Գոբի անունը մոնղոլական ծագում ունի. նշանակում է հարթություն, որը ծածկըված է նոսր, կիսաանապատային բուսականությամբ: Գոբի ասելով մոնղոլները հասկանում են նաև անտառազուրկ և քիչ բարձրություններով հարթություն: Կենտրոնական Ասիայի քարտեզի վրա կարելի է հանդիպել բազմաթիվ անուններ, որոնց մեջ կա, «գոբի» բառը. ինչպես օրինակ՝ Նարին-խուխու-գոբի, Շարգաին-գոբի, Բարձոն-գոբի և այլն:

Գոբիին ուրիշ կերպ անվանում են նաև Շամո: Վերջինս չինարեն է և բառացի նշանակում է ավազուտային անապատ: Այս անվան առաջացումը ևս հետաքրքիր է, որովհետև անապատի միայն հարավային մասն է ավազուտ: Չինացին իր սահմանների մոտ տեսնում էր ավազուտային տարածություն և նրան պետք է տար «Շամո» անունը:

Գոբին անսահման տափաստան է մերթ թույլ ալիքավոր, մերթ բարձր թմբաշարքերով, զառիթափ բլուրներով, որոնք ոչ մի տեղ չէին խախտում իրենց միապաղաղ բնույթը: Դրանք միայն ընդհատվում են մոնղոլական յուրտերով:

Գոբին այնքան ամայի չէ, որքան Սահարան: Գարնանը և ամռան սկզբին նա ծածկվում է աննշան խոտով, որով կերակրվում են մոնղոլների անասունները: Ինչպես հայտնի է, աշխարհում չկա մի երկիր, որտեղ ամեն մի շնչին այնքան շատ անասուն ընկնի, ինչպես Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայում: Թե գարնանը և թե ուշ աշնանը Գոբիում բացօթյա արածում են մոնղոլների ոչխարների, այծերի և խոշոր եղջերավոր անասունների հոտերը:

Ճանապարհորդը Գոբիում շաբաթներ շարունակ կարող է տեսնել բազմապիսի օդատեսիլներ՝ միրաժներ: Նրա առաջ մերթ բացվում են մերկ հարթություններ, որոնք ձմռանը շողշողում են նախորդ տարվա չորա-

ցած խոտերի գույնով. ապա հաջորդում են ժայռոտ թմբերը և բլուրները, որոնց գագաթին երբեմն երևում և անհետանում են արագավազ եղջերուները:

Գոբին մարդու կողմից քիչ է յուրացված: Նրա մշտական բնակիչները դեռ մնում են՝ Պրժևալսկու ձիու և կուլանի[1]) երամակները, վայրի ուղտը, յակը, իսկ անտիլոպներից էլ՝ ձերենը: Կուլանը չափազանց արագավազ և տոկուն կենդանի է. ունի ամուր ոտքեր: Բնակվում է Գոբիի խորքերում: Սննդի նկատմամբ սակավապահանջ է և հանգիստ տանում է շրջապատի խստությունն ու անջրդիությունը: Նրա գույնը հարմարվել է անապատին. ոչ մի բանից չի վախենում, բացի մարդուց: Կուլանը աստիճանաբար պակասում է անսահմանափակ որսի պատճառով: Նրա միսը և ճարպը թանկ են գնահատվում:

Ներկայումս կուլանն ամենից շատ տարածված է Կարակումի հարավ-արևելյան մասում: Այստեղ այժմ ստեղծվել են կուլանի արգելավայրեր, որովհետև նա անհետացող կենդանիների շարքին է պատկանում: Նրա գլխաքանակը տարեց տարի պակասում է: Հազարավոր տարիներ առաջ Միջագետքի և Առաջավոր Ասիայի երկրներում ընտելացած կուլանն օգտագործվել է որպես բեռներ փոխադրող և անգամ քաշող անասուն: Բացի կուլանից Գոբիում, հատկապես Տիբեթի սահմանամերձ շրջաններում, ապրում է նաև վայրի յակը: Վայրի յակը, կամ ինչպես ասում են՝ երկարբուրդ եզը, ծանր և դիմացկուն կենդանի է: Նրա մարմինը ծածկված է խիտ և սև բրդով: Յակը շատ ուժեղ է, ունի շատ լավ հոտառություն: Ամենադժվարին կածաններով, բարձր ու ժայռոտ լեռներով նա հիանալի է մագլցում: Յակը տալիս է բուրդ, հիանալի կաթ, միս. նա օգտագործվում է նաև բեռներ փոխադրելու համար:



Գոբիին հատուկ է նաև երկսապատանի ուղտը: Այդ կենդանին այնքան է ընտելացել անապատին, որ երբ նրան պահում են ախոռում, շատ լավ կերակրելու դեպքում անգամ, նիհարում է: Նա ուտում է սաքսաուլ, անգամ փուշ-տատասկ: Մեր մարզագետիններում ու սարերում աճող փարթամ ու հյութալի խոտը նրա համար անսովոր է, անդուր: Մոնղոլիայի պայմաններում ուղտն ապրում է մինչև 30 տարի, նույնիսկ՝ քառասուն տարի: Նա մի օրում 200 կիլոգրամ բեռով կարող է անցնել մոտավորապես հիսուն կիլոմետր:

Գոբիով է անցնում Ուլան-Բատոր—Պեկին նշանավոր քարավանային ճանապարհը: Այդ ճանապարհը ուղտերի քարավանն անցնում է երեք շաբաթում: Եվ ահա քարավանը հասնում է չինական Մեծ պարսպին: Այստեղ Գոբիի միապաղաղ բնությունն ընդհատվում է և ճանապարհորդը մտնում է Կալգան (այժմ Չժանցզյակոու) քաղաքին, որը գտնվում է չինական նշանավոր Մեծ պարսպի դռների մոտ: Այստեղից էլ ճանապարհը զառիթափ իջնում է դեպի Պեկինի հարթությունը: Պարսպի մոտից դիտողի առջև բացվում է մեծ ու բարեբեր երկրի մի հատվածը: Ամենուրեք երևում են խնամքով մշակված դաշտեր, արտեր, բանջարանոցներ: Հարթության կենտրոնում էլ տեղադրված է ժողովրդական Չինաստանի մայրաքաղաքը՝ հնագույն Պեկինը:

1) *Կուլան—վայրի էշ:*

---

## ՄԻ ԳԾՈՎ ՄԻ ՔԱՆԻ ԽՈՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ

**Վ. ԲԵԳԼԱՐՅԱՆ**

*(Ինժեներ)*

Հեռախոսի հայտնագործումից հետո, քաղաքները և շրջանները կապի գծերով միացվեցին միմյանց հետ: Օրեցօր ավելանում էր միջքաղաքային հեռախոսներով խոսող քաղաքացիների թիվը: Երբ երկու բաժանորդ խոսում էին, լարերը զբաղվում էին: Մյուս քաղաքացիներն սպասում էին, մինչև որ նրանց խոսակցությունը վերջանա: Կապի այդպիսի աշխատանքը շատ անհարմար էր: Դրա համար էլ մի զույգ լարի փոխարեն սկսեցին կախել երկրորդ, երրորդ և հաջորդ զույգ լարերը: Արդեն կարող էին խոսել չորս, վեց և ավելի մեծ թվով քաղաքացիներ:

Այդ ժամանակ մարդիկ մտածեցին, թե արդյոք չի կարելի այնպես անել, որ մի լարով միքանի քաղաքացի խոսեն: Հեռախոսի մասնագետներին օգնեց ռադիոն: Ինչպես հայտնի է առանց մեկը մյուսին խանգարելու միաժամանակ աշխատում են մի քանի ռա-

դիոկայան: Մեկը ռադիոընդունիչը միացնում է Մոսկվա, իսկ մի ուրիշը, նույն ժամանակ միացնում է Լենինգրադ: Ռադիոյի այս հատկությունը կապի մեջ հիանալի արդյունք տվեց:




Հեռախոսային խոսակցության ժամանակ միկրոֆոնի մեջ ստացված հոսանքը սովորաբար գնում է խոսակցության գիծը: Իսկ սովետական մի խումբ մասնագետների ստեղծած նոր սարքավորման մեջ այդպես չի լինում: Այստեղ խոսակցությունից միկրոֆոնի մեջ ստացված հոսանքին միանում է բարձր հաճախականության հոսանքը: Այդ հոսանքը մի րոպեում իր ուղղությունը փոխում է ոչ թե 50 անգամ, ինչպես մեր սենյակները լուսավորող էլեկտրականությունը, այլ մի քանի տասնյակ հազար անգամ: Բարձր հաճախականությունը ստացվում է հատուկ էլեկտրական սարքավորման՝ ռադիոլամպի և գեներատորի միատեղ աշխատանքի միջոցով, որը դրվում է հեռախոսային կայանում:

Մի քանի խոսակցությունների ժամանակ ստացվող հոսանքները հագենում են տարբեր մեծություններով, բարձր հաճախականության՝ արագ փոփոխվող հոսանքով:




Ամեն մի խոսակցություն դառնում է համապատասխան ալիքով ռադիոհաղորդում, միայն այն տարբերությամբ, որ չի տարածվում օդում, այլ գնում է լարով:

Հեռու վայրերի խոսակցությունների համար ճանապարհի կեսին դրվում են հատուկ ուժեղացուցիչներ (4): Դրանք ուժեղացնում են ձայնային ալիքները:

Ահա խոսակցությունները հասնում են ընդունման կայան: Այժմ նրանք անսխալ պետք է բաշխվեն ըստ հասցեների:

Խոսակցությունը հասցեատիրոջը հասնելու համար ճանապարհին դրվում է էլեկտրական ֆիլտր (3): Էլեկտրական զտիչը շատ լավ հատկություն ունի: Նա իր միջով բաց է թողնում այն հոսանքը, որն ունի համապատասխան հաճախականություն: Ամեն մի խոսակցության համար դրվում է առանձին էլեկտրական զտիչ, որով անցնում է մի խոսակցություն: Զտիչը բաց է անում մի խոսակցության ճանապարհը և փակում՝ մյուսներինը: Այդ պատճառով էլ մի ծայրի խոսակցությունը ճիշտ կերպով հասնում է մյուս ծայրի խոսակցին: Բայց մինչև հեռախոսի լսափողին հասնելը, նորից դեդեկտորի միջոցով բարձր հաճախականությունը վեր է ածվում լսելի տատանումների և մտնում լսափող: Լսելի տատանումները ընկնելով մեմբրանի վրա, ստիպում են ասելու այն խոսքերը, որոնք ասվել են մյուս ծայրում՝ միկրոֆոնում:

Դեռ 1941 թվականին բաց է թողնվել կապի այնպիսի սարքավորում, որով հնարավոր է մի գծով հաղորդել տասներկու խոսակցություն, իսկ այժմ դա հասնում է տասնութի:

Գոյություն ունեն հատուկ կաբելներ՝ գծեր, որոնք ոչ թե կախում են սյուներից, այլ գցվում են գետնի տակ: Այդ գծերով կարելի է հաղորդել միքանի հարյուր խոսակցություն և հեռագիր:

Սովետական գիտնականները օրեցօր կատարելագործում են հեռախոսային և հեռագրային կապը: Խոսակցության գծերը միաժամանակ օգտագործվում է նաև հեռագրի համար:

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

**«Տարաս Պոլեշչուկ»**

Կապույտ Դնեպրի ափին, ուկրաինական շագանակենու տակ փռված են պիոներական ճամբարի վրանները: Պիոներները հոպակ են պարում...

Դանդաղ իջնում է ուկրաինական աստղազարդ գիշերը: Ճամբարը քնած է: Քնած է և Տարասը: Այդ պահին սովետական երկրի սահմանը խախտում է թշնամին. սկսվում է Հայրենական Մեծ պատերազմը: Կիևի վրա պայթում են առաջին ռումբերը: Ճամբարը տակն ու վրա է լինում. ամեն ինչ փոխվում է:

Տարասի հայրը ռազմաճակատ է մեկնում: Ավերվում է Տարասենց տունը և տղան մոր՝ բուժքույր Աքսինյայի հետ հոսպիտալ է տեղափոխվում: Տարասն օգնում է մորը. մտերմանում վիրավոր մարտիկների հետ: Ֆաշիստական հորդաները շրջապատում են

կիևը, մտնում քաղաք։ Նրանք սպանում, կախաղան են բարձրացնում հազարավոր անմեղ քաղաքացիների, գնդակահարում երեխաներին և կանանց։ Տարասը մոր հետ թաքցնում է մի քանի վիրավորների։ Սակայն դեղն ու սննդամթերքը վերջանում են։ Ախինյան ստիպված է դուրս գալ քաղաքից, գտնել ընդհատակյա ընկերներին։ Բայց այդ չի հաջողվում, ֆաշիստները բռնում և կախում են նրան։



Մի քանի օր հետո Տարասն ինքն է դուրս գալիս քաղաքից։ Նրան հաջողվում է գտնել քեռուն՝ պարտիզան Եգորին, որի միջոցով և փրկում են վիրավորներին։ Ապա Տարասն ընդունվում է պարտիզանական ջոկատներից մեկի շարքերը։ Եվ ահա նրան բախտ է վիճակվում հետախուզել Բրեստ-Լիտովսկ խճուղին, որտեղ կենտրոնացած է ֆաշիստական պահեստային ուժը։ Մարտական առաջադրանքը գերազանց կատարելու համար քաջարի տղային կոմերիտմիության շարքերն են ընդունում։ Վրա է հասնում 1943 թվականի նոյեմբերը։ Սովետական զորքերը ջախջախելով թշնամուն, մտնում են Կիև։ Պարտիզանական ջոկատները գերի են վերցնում գլխակորույս փախչող հիտլերականներին։ Տարասը գերիների հանձնման կայանում հանդիպում է հորը։

Այս է Միքայել Հարությունյանի «Տարաս Պոլեչչուկ» պոեմի համառոտ բովանդակությունը։

Ընթերցողը լարված հետաքրքրությամբ է հետևում Տարասին, տխրում և ուրախանում նրա հետ։ Պոեմը ոգևորում է պատանի ընթերցողներին, տոգորում նրանց սովետական հայրենասիրությամբ։ Գիրքը գեղեցիկ կերպով նկարազարդել է երիտասարդ նկարիչ Վ. Կաժոյանը։

*Հ. ՇԻՐԱԶՅԱՆ*

# ՉԵՄՊԻՈՆԻ ԿՈՉՄԱՆ ՀԱՄԱՐ

*Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆ*

Մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում առաջին անգամ չէ, որ անց են կացվում շախմատի աշխարհի առաջնության մրցումները։ 1951 թվականին այնտեղ կայացավ մատչ-տուրնիր աշխարհի առաջնության համար, աշխարհի չեմպիոն, գրոսմայստեր Մ. Բոտվիննիկի և սովետական գրոսմայստեր Բրոնշտեյնի միջև։ Ինչպես հայտնի է, այդ մատչը վերջացավ 12:12 հաշվով։ Մ. Բոտվիննիկը պահպանեց աշխարհի չեմպիոնի կոչումը։

Այս անգամ՝ 1954 թվականին նույնպես աշխարհի չեմպիոնի կոչումը վիճարկում էին սովետական երկու ականավոր գրոսմայստերներ՝ Վ. Սմիսլովն ու Մ. Բոտվիննիկը, որոնք միջազգային մրցումներում շատ անգամ հաղթանակել են։ Այս համառ պայքարը տևեց երկու ամիս։ Մատչին էր բևեռված աշխարհի բոլոր շախմատիստների և առանձնապես միլիոնավոր սովետական շախմատիստների ուշադրությունը։ Բոլորին հետաքրքրում էր մի հարց. ո՞վ կհաղթի, ո՞վ պետք է կրի աշխարհի չեմպիոնի կոչումը։ Մատչի հենց սկզբում խաղը ընդունեց լարված, սուր բնույթ։ Պարտիաների մեծ մասի արդյունքները (24-ից՝ 14) ցույց են տալիս, որ գրոսմայստերները համառորեն ձգտում էին հաղթանակի։ Տասը պարտիա վերջացավ ոչ ոքի արդյունքով։ Խաղերը լեցուն էին սուր մոմենտներով, որոնք բնորոշ են սովետական շախմատային դպրոցին։



Մ. Բոտվիննիկ և Վ. Սմիսլով

Երբ մատչի առաջին քառորդի 6 պարտիայից Մ. Բոտվիննիկին հաջողվեց շահել 4½ միավոր, ապա մատչի երկրորդ քառորդում միավորների նույն քանակը ձեռք բերեց Սմիսլովը։

Հակառակորդները միավորներ էին ձեռք բերում հաջորդականությամբ։ Մատչի երրորդ քառորդում առավելությունը նորից անցավ Մ. Բոտվիննիկի կողմը։ Նա 6 պարտիայից շահեց 4 միավոր։ 18-րդ պարտիայից հետո ընդհանուր հաշիվը դարձավ 10:8, հօգուտ՝ Մ. Բոտվիննիկի։

Թվում էր, թե Վ. Սմիսլովը պարտությունից խուսափել չի կարող։ Բայց ֆինիշում Վ. Սմիսլովը դուրս եկավ դժվարին դրությունից և մատչը վերջացավ 12:12 հավասար արդյունքով։

Այսպիսով, աշխարհի չեմպիոնի կոչումը նորից նվաճեց Բոտվիննիկը։

Այդ մատչի պարտիաները մեծ հետաքրքրություն են ներկայացնում։ Երկու հակառակորդներն էլ շատ նորություններ մտցրին սկզբնախաղի տեսության մեջ, հարստացրին այն մի շարք բարդ մտքերով։ Այդ պարտիաները խոր կերպով կուսումնասիրվեն սովետական շախմատիստների կողմից։

Այստեղ ցուցադրում ենք անցած մատչից երկու հետաքրքրական վերջավորություն։

Մատչի 12-րդ պարտիան։

Վ. Սմիսլով



Մ. Բոտվիննիկ

Այս սուր դրության մեջ Բոտվիննիկը փայլուն կերպով է անցկացնում վճռական գրոհը։

28. Թd2—g5   Նd8—d7
29. Նf1—g1   f7—f6
30. e5:f6   Ձc5—e4

Այս քայլով սևերը ենթադրում էին հեռացնել հարձակումը իրենց բազավորից. բայց հետևեց անսպասելի պատասխանը.

31. f6—f7+!   Նd7:f7
32. Թg5—d8+   Աg8—h7

Չի օգնում և 32... Նf8

33. Փ:d5+Աh7
34. Թh4+

և սպիտակները տանում են։

35. Փa2:d5   Ձe4—f2+
36. Աh1—g2   Թc6—f6
37. Թd8:f6   Նf7:f6
38. Աg2:f2   Նf6:f5+
39. Փd5—f3   Նf5—f4
40. Նg1—g4

Լուրջ բարդություններից հետո մատչի 14 պարտիայում ստեղծվեց հետևյալ դրությունը

Վ. Սմիսլով



Մ. Բոտվիննիկ

Այստեղ Սմիսլովը խաղաց 20...Փc8—b7! որին Բոտվիննիկը պատասխանեց

21. Նc1—b1?

Ճիշտ էր 21. Փ:b7   Թb7

22. Նc3 և սպիտակները կարող էին հակառակորդի գրոհը ջարդել։ Այդ ժամանակ Սմիսլովը արագ հաղթանակ է ձեռք բերում։

21. . . . . .   Ձe5—f3+
22. Աg1—h1   Փb7:a8
23. Նb1:b2   Ձf3:g5+
24. Աh1—h2   Ձg5—f3+
25. Աh2—h3   Փg7:b2
26. Թa4:a7   Փa8—e4

Սևերը թագուհու դիմաց ստացան երեք թեթև ֆիգուրա և պաշտպանեցին հարձակումը շարունակելու հնարավորությունը։ Սպիտակներին արդեն փրկություն չկա։

27. a3—a4   Աg8—g7
28. Նf1—d1   Փb2—e5

29. Թa7—e7 Նf8—c8
30. a4—a5 Նc8—c2
31. Աh3—g2 Ձf3—d4+
32. Աg2—f1 Փe4—f3
33. Նd1—b1 Ձd4—c6
սպիտակները հանձնվեցին:




## Թվաբանական խնդիրներ

Առաջարկ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

1, 3, 5, 7, 9, 11, 13, 15, 17, 19, 21, 23, 25, 27, 29, 31, 33, 35, 37, 39, 41, 43, 45, 47—49 թվերը առաջին, իսկ 2, 4, 6, 8, 10, 12, 14, 16, 18, 20, 22, 24, 26, 28, 30, 32, 34, 36, 38, 40, 42, 44, 46, 48, 50 թվերը երկրորդ քառակուսու շրջանակներում դասավորեցեք այնպես, որ ուղղահայաց և հորիզոնական ուղղություններում, անկյունագծերում, ինչպես նաև կրկնակի գծեր ունեցող շրջանակներում թվերի գումարը առաջին քառակուսում հավասար լինի 125-ի, իսկ երկրորդում՝ 130-ի:





## Հանելուկներ

Իջնում, նստում է
Ե՛վ լուռ, և՛ խաղաղ,
Իսկ երբ վազում է,
Երգում է ուրախ:

* * *

Ջուրը՝ նրա մայրն է,
Հուրը՝ նրա հայրն է,
Իսկ երկինքը լայն ու մեծ
Նրա սիրած վայրն է:

Ծնվում է նա ամեն ամիս,
Հորիզոնում մահն է գալիս,
Թե լինում է անամպ գիշեր
Ողջ աշխարհին լույս է տալիս:

* * *

Ամառ, ձմեռ քուրքը հագին,
Անտառ ու սար ոտքի տակին:
Արածում է՝ ջուր չի խմում,
Մեծանում է՝ բան չի ուտում,
Տուն է շինում փոքրիկ ու մութ
Ո՛չ դուռ ունի, ո՛չ լուսամուտ:

Ս. ԱՐՇԱԿՈՒՆԻ

## Խ ա ղ

### ԳՐԱՎԵԼ ՇՐՋԱՆԱԿՆԵՐԸ

Խաղի համար անհրաժեշտ է հրապարակում գծել տասը մետր լայնությամբ և քսանչորս մետր երկարությամբ մի ուղղանկյուն-քառանկյունի: Այս քառանկյունին պետք է գծով երկու հավասար մասի բաժանել: Կենտրոնի գծից 11 մետր հեռավորության վրա խաղադաշտի երկու կողմում քաշել 10-ական շրջանակներ, մեկը մյուսից կես քայլ հեռավորությամբ:

20 խաղացողները բաժանվում են երկու մասի և շարվում են կենտրոնի գծի երկու կողմում:

— Սկսե՛լ խաղը,— հրահանգում է ղեկավարը:

Խաղացողներն աշխատում են ճեղքել հակառակորդի ճակատը և առանց խփվելու գրավել շրջանակները: Այն տասնյակը, որը շուտ է ավարտում շրջանակների գրավումը, համարվում է հաղթող: Երբ որևէ մեկին մինչև շրջանակին հասնելը խփում են, նա անմիջապես ետ է դառնում իր նախկին տեղը և նորից շարունակում խաղը: Երբ խաղացողների քանակը մեծանում է կամ պակասում, համապատասխան չափով պետք է մեծացնել կամ փոքրացնել խաղադաշտը, ավելացնել կամ պակասեցնել շրջանակները:

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկը՝ նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ*



*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.
*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*
*ՎՖ 11311։ Պատվեր 794։ Տիրաժ 5000։ Տպագրական 2¼ մամուլ։ Ստորագրված է տպագրության 22/VI 1954 թ.։*

*Գլխհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող., № 65, 1954 թ.։*

# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

## Տաղանդավոր վարպետը

1908 թվականն է: Թիֆլիսի թատրոններից մեկում բեմադրվում է Գ. Սունդուկյանի «Պեպոն»: Դահլիճը լեփ-լեցուն է հանդիսականներով: Պիեսի երրորդ գործողության մեջ, երբ «բարաթը» գտնվելուց հետո Պեպոն իր ցասումն է թափում Զիմզիմովի գլխին, ծայրեծայր լցված դահլիճը սկսում է այնպես ծափահարել, որ ներկայացումը ընդհատվում է: Շատերը վազում են դեպի բեմը: Ծափահարությունների որոտին խառնըվում են ուրախ բացագանչությունները:



— Բրավո՜... բրավո՜, Աբելյա՛ն... բրավո՜,— լսվում է այս ու այն կողմից:

Աբելյանին մի քանի անգամ բեմ են կանչում և ողջունում:

Դա տաղանդավոր դերասանի առաջին ելույթն էր «Պեպո» կոմեդիայում:

Հովհաննես Աբելյանը շատ ու բազմազան դերեր է կերտել: Եվ բոլորն էլ աչքի էին ընկնում իրենց բեմական բարձր արվեստով ու գեղարվեստական կատարելությամբ:

«... Երբեմն արծիվ, գայլխոտը ձեռքին, երբեմն մուրացիկ՝ ցնցոտի հագած... Այսօր մավրը վիրավորված առյուծի պես մռնչում էր ու հեծկլտում խաբված լինելու մոլորությունից, վաղը խորամանկ, ագահ վաշխառուն դավեր էր սարքում իր մտերիմ ընկերոջը խաբելու, հարստահարելու համար... Այնքա՜ն-այնքան կյանքեր ապրեց նա ու ապրեցրեց հասարակությանը իր ջերմ, անկեղծ ու վարակիչ խաղով...» գրում է Օ. Գուլազյանը Աբելյանի մասին:

Աբելյանը «Օթելլո», «Արքա Լիր» և այլ կլասիկ ողբերգություններից բացի, հաջողությամբ խաղում էր նաև ուրախ կոմեդիաներում:

Հովհաննես Աբելյանը ծնվել է 1865 թվականին Շամախի գավառական քաղաքում: 1876 թվականին ավարտելով Բաքվի հայկական ծխական դպրոցը, նա ընդունվում է ռուսական ռեալական դպրոցը: Այդ տարիներին նա երազում էր ծովային դառնալ: Նա շատ էր սիրում ծովը:

Դպրոցական ընկերների շրջանում Հովհաննեսը աչքի էր ընկնում իր պարզությամբ, շիտակությամբ և բարությամբ: Նա շատ էր կարդում հայ գրողների, ինչպես նաև Պուշկինի, Շեքսպիրի, Հայնեի, Գյոթեի, Լերմոնտովի, Տոլստոյի, Տուրգենևի և ուրիշների գրքերը:

Երրորդ դասարանի աշակերտ եղած ժամանակ, նա արդեն տարված էր թատրոնով: Բայց քանի որ այդ ժամանակ Բաքվում չկար հայ թատերական խումբ, Հովհաննեսը մտավ ռուսական խումբ: Այդտեղ նա մեծ հաջողություն ունեցավ: 1885 թվականին Բաքու եկավ Պետրոս Ադամյանը: Ադամյանի խաղը և հսկայական հաջողությունը Աբելյանի մեջ մեծ հեղաշրջում առաջացրին: Նա հաստատապես վճռեց նվիրվել հայ բեմին:

Կես դարից ավելի աշխատելով հայ բեմում Հովհաննես Աբելյանը մոտ 300 տարբեր դեր է կերտել: Նրա գլուխգործոցներից են՝ էլիզբարովի, Գիժ Դանելի, Բարխուդարի, Արքա Լիրի, Եգոր Բուլիչևի և շատ ու շատ այլ դերերը:

Աբելյանը մեռավ 1936 թվականի հուլիսի մեկին:

## Ժողովրդական երգիչն ու լուսավորիչը

«Նա կնայի ստեպների արծվից էլ սուր
Իր խոների լարերն հնգում ծվեն-ծվեն,
Ու թախիծով իր լեռնացած ցասումը
սուրբ
Նա կնետի տգիտության ու չարի
դեմ»:

Այսպես է երգել բանաստեղծի դերը ղազախական մեծ պոետ-լուսավորիչ Աբայ Կունանբաևը: Նա իր ամբողջ կյանքն ու տաղանդը նվիրել է ժողովրդին...

Ծանր էր ղազախական ժողովրդի կյանքը մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան: Նրան ճնշում և թալանում էին բայերը և ցարական չինովնիկները: Աբայը գիտեր, որ իր ժողովուրդը հետամնաց



է, բայց երբեք չհրաժարվեց բռնության, խավարի և անարդարության դեմ մղվող պայքարից: Իր ստեղծագործություններով մեծ գրողը մերկացնում էր շահագործողների ու երկշողների կարգերը:

Աբայը ղազախ ժողովրդի փրկությունը գտնում էր ռուս մեծ ժողովրդի հետ բարեկամություն հաստատելու մեջ: Դրա համար էլ թարգմանել է Լերմոնտովի, Պուշկինի և Կռիլովի մի շարք ստեղծագործություններ:

Ռուս բանվորների և գյուղացիների պայքարը հանուն լուսավոր ապագայի՝ մեծ օրինակ հանդիսացավ ղազախ ժողովրդի համար:

«...Արիություն, մեծագույն համառություն են ցուցաբերում ռուս հերոսները... Նրանց կյանքի պատմության օրինակով պետք է դաստիարակվի մեր երիտասարդ սերունդը...»,— ասում էր Աբայ Կունանբաևը և ինքն էլ նվիրվում այդ գործին: Նրա ստեղծագործությունները լայն տարածում գտան ժողովրդի մեջ, բայց բանավոր կերպով: Աբայի երկերի հրատարակումը սկսվել է միայն նրա մահից հետո:

Աբայ Կունանբաևը մահացել է 1904 թվականի հուլիսի 6-ին:

ԳԻՆԸ 2 Ռ.



Փարվանի ձկնորսները:



Ֆոտոէտյուդ՝ Ա. ՁԱԼԱԼՅԱՆԻ